# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
## № 8 ● 1985

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ



ԳՈՒՐԳԵՆ ՍԱՐԳՍՅԱՆ

# Այս ո՞վ է գալիս

Այս ու՞մ են բերում.
Այս ո՞վ է գալիս.
Ի՛նչ խնդություն է.
Ինչ ե՛րգ. ինչ բուրմո՛ւնք...

Բնության դուստրն է գալիս լուսադեմ.
Բնության դուստրը՝ հուրհեր. աստղաչ:
Իր գլխի վերև պսակ են կազմել
Մեղուներն ոսկյա ու փոշեթաթախ:

Կապույտ զգեստի քղանցքն են պահել
Յոթ գույն-գույն թռչուն կտուցով արծաթ:
Դեղին վարսերին յոթ նախշուն թիթեռ
Իջել են ասես եդեմածաղկին:
Յոթ ծաղիկ-մանուկ երգում են զվարթ.
Թևին են տալիս նրա առջևից:

Բնության դուստրն է գալիս ու ժպտում.
Եվ դաշտերն անծիր հագնում են կանաչ:
Բնության դուստրն է գալիս ու ժպտում.
Եվ ծովն երկնքի դառնում է թովիչ:
Բնության դուստրն է գալիս ու ժպտում.
Նրա ժպիտից ծառերն են ծաղկում,
Ժպտում է՝
Գետը դառնում է քրքիջ.
Ժպտում է՝
Քամին բույր է տարածում:
Բնության դուստրը՝ գարունն է գալիս,
Գալիս է; ժպտում.
Եվ օրն է հագնում չքնաղ ծիրանի.
Ժպտում է, և աշխարհի վրա
Խինդ է սփռվում. խինդ երանելի:



Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿՈՒԼՈՒՋՅԱՆԻ

**Ամռանը ճամբարում շատերն են օրագիր պահում:**

**Տպագրելով ջոկատավար Մարինա Նաումովայի օրագրից մի քանի հատված, կարծում ենք, որ այս ամռանը ճամբարում անցկացրած մյուս ջոկատավարները ևս իրենց օրագրերից հետաքրքրական հատվածներ կուղարկեն խմբագրություն:**

# «Ալ առագաստներ»

Երևի, առաջին անգամ պիոներական ճամբար գնացող յուրաքանչյուր ջոկատավար իրեն հարց է տալիս. «Կկարողանա՞մ»: Ինձ համար դա կրկնակի կարևոր է, քանի որ ես՝ ապագա մանկավարժս, լուծում եմ շատ կարևոր մի խնդիր ևս. արդյո՞ք ճիշտ եմ ընտրել մասնագիտությունս:

## ԱՌԱՋԻՆ ՕՐԸ

Ասում են առաջին հանդիպումից է կախված ամբողջ հերթի հաջողությունը, նույնիսկ փորձառու ջոկատավարները հուզվում են: Գուցե այդ օրը շատ կարևոր է, բայց ես դա չնկատեցի: Կարգապահությունը ջոկատում անթերի էր, ես բացարձակապես հանգիստ էի: Ամեն ինչ հարթ էր ընթանում, հեշտ ու հանգիստ: Իսկ գուցե միայն թվում էր: Չէ՞ որ ես դեռևս չէի զգում ջոկատի ընդհանուր տրամադրությունը. պահանջում էի, նրանք կատարում էին: Ուշադիր լսում էին, բայց խոսակցությանը քչերն էին միանում: Մի քիչ ավելի մտերմացանք երեկոյան՝ խարույկի շուրջը, շատ օգնեցին նաև ուրախ շարժական խաղերը:

Երեք օր հետո տղաները չարաճճի ժպտալով խոստովանեցին.

— Իսկ մենք ձեզ փորձում էինք:

— Գիտե՞ք,— ես հապաղեցի, որ նրանք շունչները պահեն,— գիտեք, ձեզ հետ կարելի է ապրել:

Բոլորը խցաններից նման դուրս թռան վերմակների տակից:

— Եկեք մի բան մտածենք, մի այնպիսի բան...

— Ուշ է արդեն, տղաներ, հարկավոր է քնել: Իսկ վաղն անպայման մի բան կմտածենք:

Եվ թող նրանք դեռ խոսեն, քննարկեն, չեմ

խանգարի նրանց երևակայությանը: Չէ՞ որ նրանք դեռ չեն սովորել անկեղծ լինել իմ ներկայությամբ: Հետո, հերթափոխի վերջում, հենց իրենք ինձ կառաջարկեն. «Եկեք անկեղծ խոսենք»:

Երեխաներն առաջին անգամ սովորում են մտածել իրենց ջոկատի կյանքի մասին:

## ԻՄ ՕԳՆԱԿԱՆՆԵՐԸ

Աշխատանքային պլանի համաձայն կատարելու ենք ակտիվի ընտրություն:

Նստել ենք նստարանին, ձախից՝ աղջիկները, աջից՝ տղաները: Բոլորը կենտրոնացած են, հուզված, թեև աշխատում են ցույց չտալ: Իմ դրությունն էլ փառավոր չէ. նրանք գոնե շատերը ճանաչում են իրար, նախորդ տարիներին հանգստացել են միասին: Թեկնածությունները գնահատում են շատ բնական ռեակցիայով. «Իսկ ինչու՛ ես, չեմ ուզում»: Հավաքույթի վերջում ես արդեն կարողանում եմ տարբերել այդ «չեմ ուզում»-ների նրբերանգները: Ոմանք դա ասում են հենց այնպես, սոսկ ձևականության համար, դե հո չե՞ն կարող խոստովանել, որ շատ են ուզում լինել ջոկատի խորհրդի անդամ և այդ ընտրությունը շոյում է իրենց:

Մյուսների «չեմ ուզում»-ի մեջ անվստահության նոտաներ կան, սրանց հարկավոր է քաջալերել: Երրորդների մոտ «չեմ ուզում»-ը կտրուկ հրաժարական է: Էհ, չենք էլ ստիպի:

— Դե, իսկ ո՞վ կլինի ջոկատի խորհրդի նախագահ:

Միակ թեկնածուն Կրասիլնիկովն է: Նա չի հրաժարվում: Հայացքը զգուշավոր է, բայց անկեղծ:

— Ո՞վ է կողմ, ո՞վ՝ դեմ...

Թեկնածությունն աղջիկները տվեցին: Տղաները հակառակվելու համար դեմ քվեարկեցին՝ ընկերոջը «փրկել» էին ուզում:

— Իսկ դուք նրան չե՞ք վստահում, ի՞նչ է, կամ ուրիշ թեկնածու՞ ունեք:

Լռություն:

— Ուրեմն, ձայների մեծամասնությամբ...

## ԻՆՉՊԵՍ ԱՆՎԱՆԵԼ ՋՈԿԱՏԸ

Ես նախօրոք ամեն ինչ մտածել եմ՝ և՛ անունը, և՛ նշանաբանը, բայց ի՞նչ կասեն իրենք:

— Անցյալ տարի «Ակտիվիստ» էր անունը:

— Իսկ դուք իսկապե՞ս ամենաակտիվն էիք:

— Ոչ, երկրորդ տեղում էինք:

— «Երազ»:

— «Ժպիտ»:

— «Երիցուկ»:

Առաջարկում են անտարբեր ձայնով, կար-




Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ծես դա իրենց ամենից քիչ է հետաքրքրում:

Նայում եմ մեր տնակին: Երկնքի կապույտի վրա ամպերի սպիտակ փրփուրն է:

Ինչ-որ մեկն ասել էր, թե պիոներական ճամբարները շատ նման են առագաստանավերի, հատկապես լուսաբացին, երբ ուրվագծերը դեռ մշուշոտ են: Թվում է, թե լողում են՝ օրորվելով ալիքների վրա, փողփողում է դրոշը... Բայց մեր նավը դեռ խարսխված է: Նրա առագաստներն արդեն ուռչում են համընթաց քամուց, նրան առաջ կարող են տանել միայն երևակայությունն ու նախաձեռնությունը, հավատարմությունն ու բարեկամությունը: Միայն այդ դեպքում մեր նավը դուրս կգա ճամփորդության:

— Ձեր ճանապարհորդությունը անսովոր է,— ասում եմ ես երեխաներին,— աշխարհագրական ոչ մի քարտեզի վրա դուք չեք գտնի Հաջողությունների ափը, Բարեկամության հրվանդանը կամ Ուրախ Ռոբինզոնների ծովախորշը: Այս բոլորը մենք ինքներս պիտի հայտնագործենք, ինչպես նաև մեր մեջ բացահայտենք բարեկամանալու, երազելու, դժվարություններից չընկճվելու կարողությունները: Այս է սպասվում մեր առագաստանավին:

Բոլորը ոգևորվում են.

— «Ալ առագաստներ»:

— Բայց ավելի լավ չէ՞ «Համընթաց քամին»:

— Ո՛չ, ո՛չ, միայն հակառակ, թե չէ էլ ինչ «ծովային գայլեր» կլինենք մենք առանց դժվարությունների:

Հիմա արդեն նավաստիներն են երազում:

— Տանիքին կամրացնենք ծովային երկնագույն դրոշ, իսկ պատին՝ փրկարար օղակ, վրան կգրենք ջոկատի անունը՝ «Ալ առագաստներ», կողքին շղթայով կկախենք խարիսխը...

Հաջորդ օրը ընդունեցինք ծովային օրենքները, իսկ Կրասիլնիկովը դարձավ կապիտան: Նույնիսկ ամենաչարաճճիներն էին լռել, երբ նա հանդիսավոր ձայնով ասում էր.

— Երդվում եմ՝ աշխարհում ամենից բարձր պահել մեր ծովային ընկերության պատիվը, որն ամրապնդվել է պիոներական բարեկամությամբ...

Գիշեր է, վաղուց քնել է իմ անձնակազմը, նույնիսկ քնի մեջ հանդիսավոր են նրանց դեմքերը, երևի երազում լողում են փոթորկոտ ծովերում:

## ՕՐ'Ն ԱՎԱՐՏՎԱԾ Է

Բոլորն էլ գիտեն, որ առավոտյան տողանի ժամանակ հայտարարվում է օրվա ռեժիմը: Իսկ երեկոյան տողանին... Օրն ավարտվում է և, բնականաբար, պետք է ամփոփել արդյունքները: Բայց այսօր մենք ոչ թե թվելու ենք, թե ինչ ենք արել օրվա ընթացքում, այլ այն, ինչ չենք հասցրել: Մենք պարզապես կպատմենք, որ օրն ուրախ տրամադրությամբ ավարտենք: Օրվա ընթացքում քիչ զավեշտական դեպքեր չեն եղել: Դե, ուրեմն, ծիծաղենք ինքներս մեզ վրա:

— ... Գիտե՞ք, արդյոք, որ ՄԺԼ-ի ժամանակ (ՄԺԼ-մեկուկես ժամ լռություն— մենք անվանել էինք ցերեկային հանգստի ժամը) մեր ջոկատի աղջիկները ննջարանը վերածել էին ձիարշավարանի և մրցավազքի նման մի բան էին անցկացնում: Ի վերջո մենք պետք է շնորհակալ լինենք նրանց, որ առաստաղը գլխներիս չփլվեց:

— ... Գիտե՞ք, արդյոք, որ եթե ուտենք բոլոր կոնֆետները, ապա հնագետները ըստիպված կլինեն կոնֆետի թղթերի սարի տակ պեղել մեր ճամբարը, իսկ ողջ ջոկատում միայն երեք առողջ ատամ կմնա...

Ծիծաղը հանդարտվեց: Հիմա արդեն կարելի է և լուրջ.

— ՄԺԼ-ի ժամանակ աղմկելու համար աղջիկներին՝ նկատողություն: Ջոկատի խորհրդի նախագահ Դմիտրի Կրասիլնիկովին պարտավորեցնել վաղն ևեթ աշխատանքային դեսանտ կազմակերպել և մաքրել շրջակայքը կոնֆետի թղթերից:

Օրվա արդյունքներն այսպես ամփոփելը մեզ մոտ ավանդույթ դարձավ: Ի՞նչ է սա, պարզապես ծիծաղելու ցանկությու՞ն, թե նաև ինքնաքննադատություն: Չէ՞ որ հաճախ երեխաներն իրենք են ինձ «սյուժեներ» հուշում՝ չխնայելով անգամ իրենց: Այս դեպքում ազդեցությունը բացառիկ անվրեպ է լինում: Մի անգամ, օրինակ, հաշվել էինք և հայտարարել.

— ... Գիտե՞ք, արդյոք, որ Գրիշան այսօր 19 անգամ ասել է «չեմ անի»: Եթե այսպես շարունակի, նա կարող է բոլորովին մոռանալ, որ ուրիշ բառեր էլ գոյություն ունեն...

Եվ երեսառած, ինքնասածի Գրիշան անսպասելիորեն դադարեց ամեն ինչից հրաժարվելուց և մինչև հերթափոխի վերջն էլ ոչ մի անգամ չասաց «չեմ անի»:

Կամ.

—... Գիտե՞ք, արդյոք, որ այսօր աղջիկների ննջարանում մի ճանճ էր սատկել: Ինքն իրեն, առանց քլորոֆոսի: Ձանձրույթից էր սատկել: Սարսափելի է, թե ինչ է սպասում կենդանի մնացածներին...»: Հաջորդ օրն աղջիկներն առաջարկեցին դրուժինայի համար համերգ կազմակերպել: Լավ առաջարկ չէ՞ր:



ԱՐԱՄ ՀԱԿՈԲՅԱՆ

## Քամին

Խղճի կտոր չունի քամին,
Ամառվա այս շոգ օրերին
Թաքնվում է թփուտներում
Անտես այնպես, ինչպես լորը,
Կամ քնում է ամբողջ օրը
Սարալանջի փեշերի տակ:
Ամառն այսպես անց է կացնում
Այդ անբանը, աննպատակ...
Եվ նրան ի՞նչ, որ ծարավից
Հողը ճաքեց,
Թոշնած ծաղիկն աչքը փակեց,
Ու բարակեց ջուրն առվակի
Կրակներից արեգակի...
Հորթարածը ո՞նց է քրտնել,
Իսկ հորթերը տոթից խրտնել,
Շտապում են դեպի ձորը:
Դուք տեսնո՞ւմ եք՝ ինչ է անում
Ամռան տապը,
Երբ անհանգիստ քամին դրսում,
Խոտերի մեջ չի փսփսում
Ու չի շարժում գլխիդ վերև
Ոչ մի տերև:
Էլ չենք ասում անձրևաբեր
Ամպեր բերի, անձրև տեղա՝
Հողը նորից կենդանանա,
Ծաղիկն աչքը նորից բանա,
Առվակ-առու ժիր խոխոջեն,
Հորթերն անուշ արոտ անեն,
Հորթարածն էլ ամպի հովին
Ինքնամոռաց փչի շվին:

Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ

# Անտառի ծաղկանոցը

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Փոքր հորեղբայրս պապիս պարծանքն է: «Գիտնական բալես»,— սիրում է ասել պապս: Հորեղբայրս կենսաբան է: Ես էլ եմ սիրում թե՛ բույսեր, թե՛ կենդանիներ: Պապս ասում է, որ ես հորեղբորս կըտորն եմ, նրա պես մի ոտքս տանն է, մյուսը՝ անտառում: Մոռացա ասել, որ պապս մեր գյուղի անտառապահն է, մեր տունն էլ անտառին շատ մոտիկ է: Մինչև հիմա էլ բոլորը ծիծաղում են, հիշելով, թե ինչպես հորեղբորս պատճառով մի ժամանակ մեր բակում վայրի և ընտանի կենդանիներն իրարից ջոկել չէր լինում:

Ահա այս հորեղբորս հետ անցյալ ամառ գնացինք նրա նոր աշխատանքի վայրը՝ մի հեռավոր անտառտնտեսություն:

Վա՜յ-վա՜յ-վա՜յ, ինչ անտառ, ի՜նչ բան, դա մի հսկայական արշավավայր էր, որտեղ հաղթողները վնասատու միջատներն էին՝ կաղնու տերևակույլը, ձմեռային երկրաչափը, տարազույգ մետաքսագործը՝ անտառի ամենաոխերիմ թշնամին, ինչպես ասաց հորեղբայրս: Նայելով իմ հիասթափված կերպարանքին, հորեղբայրս ծիծաղեց.

— Ի՞նչ է, նման չէ՞ մեր անտառին:

— Տեսնում ես, էլի, մեր անտառը ու՞ր, սա ու՞ր:

— Ոչինչ, դեռ ամեն ինչ կորած չէ, վերջը լավ կլինի,—չգիտես՝ ինձ, թե իրեն հուսադրեց նա:

Այս ամռանը հորեղբայրս նորից ինձ հրավիրեց արձակուրդներն անցկացնել իր մոտ:

Անտառտնտեսությունում ինձ անակընկալներ էին սպասում ամեն քայլափոխի: Շատ զարմացրեց ամենից առաջ արգելոց-անտառտնտեսության արդեն հերկված ճանապարհը, որ ամբողջովին պատված էր կակաչի և մեղրատու բույսերի ծաղիկներով ու կոկոններով, որոնց բարկ բուրմունքը շատ հեռուներն էր տարածվում:

— Ծաղկաբուծությամբ ե՞ք զբաղվում,

— հիացած ասացի ես:

Հորեղբայրս, որ աչքի պոչով ինձ էր նայում, ծիծաղեց.

— Կարծում ես անտառի այս խուլ անկյունը զարդարելու համար ենք ծաղիկներ մշակու՞մ:

— Հապա ինչու՞,— հարցրի ես:

Մինչ հորեղբայրս կպատասխաներ, բույսերին սովոր իմ աչքը հասցրեց ծաղիկների վրա անհամար քանակությամբ միջատներ նկատել: Պարզ երևում էր, որ ծաղկուն ճանապարհը նրանց բնակատեղին է: Այստեղից նրանք խմբերով անտառ էին թռչում:

— Սրանք օգտակար միջատներ են, գնում են որսալու անտառի թշնամիներին՝ վնասակար միջատներին,— պատասխանեց հորեղբայրս:

— Իսկ մի՞թե բոլոր միջատները վնասակար չեն,— հարցրի ես:

— Ո՛չ, Վահիկ, ավելի քան մեկ միլիոն միջատատեսակից միայն մի քանի հազարն են բույսերի ու կենդանիների լուրջ վնասատուներ, իսկ ավելի քան 90 տոկոսը օգուտ է բերում բնությանը:

— Օգնում են ծաղկատու կուլտուրաների փոշոտմանը, մեղր են պատրաստում, մետաքս,— գլխի ընկա ես:

— Ոչ միայն այդ, օգտակար միջատները նաև կարգավորում են վնասակար միջատների քանակը, քանի որ միջատները հսկայական չափով բազմանալու ընդունակություն ունեն: Յուրաքանչյուր վնասակար միջատատեսակի հաշվին ապրում են մի քանի տասնյակ, նույնիսկ հարյուրի հասնող մակաբույծ ու գիշատիչ միջատատեսակներ: Երբ մակաբույծ ու գիշատիչ միջատատեսակները, օգտակար միջատները ապրում են կողք-կողքի, վնասակար միջատների աճը սահմանափակվում է:

Մյուս անակնկալը ամենուրեք ծառերից կախված կերոցներն ու խմոցներն էին: Հորեղբայրս բացատրեց, որ դրանց միջոցով թռչուններին են գրավել, հրապուրել անտառ՝ վնասատուներին ոչնչացնելու համար: Իսկ անցյալ տարվա ամայի բացատները հասուն բերքով լեցուն թըփերով էին ծածկված, այստեղ վառվռուն հատապտուղները կտցելով էին զբաղված զանազան թռչուններ:

— Հատապտուղները կթողնենք թփերի վրա, որպեսզի թռչունները ձմեռն ապահով պաշար ունենան,— ասաց հորեղբայրս:



Մենք շարունակեցինք առաջանալ անտառում:

—Մրջյուննե՛րը, մրջյուննե՛րը,— հին ծանոթների հանդիպածի պես ուրախացա ես, տեսնելով մոտակա բնից դուրս եկող միջատներին: Մեր անտառում էլ շատ կային մրջնաբներ:

— Գիշատիչ այս միջատները նույնպես անտառի սանիտարներն են,— ասաց հորեղբայրս,— անտառային այս դեղին մրջյունների 3—5 բույնը բավական է, որպեսզի անտառատարածքում վնասատուներ չլինեն:

— Դուրս է գալիս, որ միջատներին օգտագործում եք միջատների դեմ, ոչ միայն թռչուններին...

— Այո՛, վնասատու միջատների դեմ օգտագործում ենք իրենց բնական թշնամիներին, հենց այդ էլ ի նկատի ունենալով ենք այստեղ ստեղծել անտառի վնասատուների դեմ պայքարող կենսաբանական համալիրը: Եվ վնասակար միջատներով սնվող օրգանիզմների օգտագործումը՝ թռչուններ, գիշատիչ ու մակաբույծ միջատներ և այլն, նույնպես պայքարի կենսաբանական մեթոդ է, մեթոդ, որը անվտանգ է թե՛ մարդու, թե՛ կենդանիների և թե՛ բնության համար:

Հորեղբորս ասածի պես, երևում էր, որ վերջը լավ էր եղել, կործանումից փրկվեց հսկայական անտառը:

# Ձվակեր տրիխոգրամման

— Դե, Վահի՛կ, պատրաստվիր, վաղը գնում ենք հարևան սովխոզին օգնելու,— ասաց հորեղբայրս:

— Վնասատուների դեմ ենք պայքարելու՞, ի՞նչ միջոցներով,— հետաքրքրվեցի ես:

—Կենսաբանական մեթոդով, տրիխոգրամմա կոչվող ձվակեր միջատի միջոցով:

Աչքերիցս հասկացավ, որ մինչև վաղն իրեն հանգիստ չեմ տալու:

— Դե, լավ, քանի ժամանակ կա, քեզ մի քիչ կպատմեմ տրիխոգրամմա պարազիտի՝ այդ օգտակար միջատի մասին: Նախ սա ձվակեր է կոչվում, քանի որ նրա ողջ զարգացումն ավարտվում է ձվի տիրոջ (այսինքն՝ թիթեռի) ձվի ներսում: Այս պարազիտը ձվադրում է կկուի նման, ուրիշի բներում՝ զանազան թիթեռների ձվերի ներսում: Տրիխոգրաման ձվերը դնում է մեկ-մեկ, իսկ ավելի խոշոր ձվերի ներսում՝ մի քանի հատ, որքան ձուն մեծ է, այնքան ավելի շատ ձվեր է դնում վնասատու միջատի ձվի մեջ: Տրիխոգրամմայի ողջ զարգացումը ավարտվում է 8—11 օրում, վնասատուի ձվի ներսում, որի ընթացքում ոչնչանում է վնասատուի ձուն:

— Բայց չէ՞ որ վարակված այգիներում վնասակար միջատները շատ-շատ են, որտեղի՞ց այդքան տրիխոգրամմա,— զարմացա ես:

— Ճիշտ է: Դրա համար տրիխոգրաման այժմ բազմացվում է այդ ձվակեր պարազիտի բուծման երեք հարյուր հիսուն կայաններում:

— Տրիխոգրամման ինչպե՞ս է բազմացվում, հորեղբայր:

— Լաբորատոր պայմաններում տրիխոգրամման բազմացնում են հացահատիկի ցեցի ձվերի վրա, այսինքն՝ տրիխոգրամման ձու է դնում լաբորատորիայում բուծված հացահատիկային ցեցի (թիթեռ) ձվերի մեջ և զարգանում է այդ ձվերի ներսում:

«Կենդանի ֆաբրիկան», այսինքն՝ տրիխոգրամմայի բուծման յուրաքանչյուր կայանք, ամեն ամիս տալիս է հացահատիկային ցեցի վրա բազմացված տրիխոգրամմայի մի քանի հարյուր միլիոն ձվիկ, որոնցից դուրս եկած տրիխոգրամմաները տարածում են դաշտերում կամ այգիներում, երբ այդ վայրերում սկսվում է վնասատու թիթեռների մասսայական ձըվադրության շրջանը: Տրիխոգրամման էլ ձու դնելով այդ վնասատու թիթեռների ձվերի մեջ, ոչնչացնում է վնասատուների սերունդը՝ սահմանափակելով նրանց աճն ու տարածումը:

— Հարևան սովխոզի այգիները վարակված են խնձորենու պտղակերով, և այժմ այդ վնասատու թիթեռի ձվադրության շրջանն է, վաղը պետք է տրիխոգրամման տարածենք այդ այգիներում:

— Հորեղբայր, տրիխոգրամման միայն խնձորենու պտղակերի դե՞մ է օգտագործվում:

— Ոչ, օգտագործվում է նաև աշնանացանի բվիճի և այլ վնասատուների դեմ... դե, այսօր ինչքան բան իմացար՝ հերիք է, գնա տուն, շուտ կպառկես քընելու, որ շուտ արթնանաս, առավոտը վաղ գնում ենք...

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

# Մոռացված պարտքը

ՆԿ. ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Գնացքը սլանում է Լոռվա գեղատեսիլ կիրճով: Ես գնում եմ վճարելու իմ պարտքը, որի մասին երեսուն տարի բոլորովին մոռացել էի: Երեսուն տարի քնել ու արթնացել էի և ոչ մի օր չէի հիշել, որ Հացի Պերճին քսանհինգ ռուբլի եմ պարտք: Սակայն ահա մի սովորական առավոտ արթնացա չմարած պարտքի զգացումով: Արթնացա գիտակցությամբ, որ երեսուն տարի առաջ կատարված մի լավ գործ անպատասխան եմ թողել: Հասկացա, որ այդպիսի մարդկանց մոռանալը համարյա հանցագործություն է և մարդ մնալու համար պիտի ամուր հիշողություն ունենալ:

Եվ ահա ես գնում եմ վճարելու իմ պարտքը Հացի Պերճին:

Ուղիղ երեսուն տարի առաջ էր: Ես հազիվ տասը տարեկան էի: Այն ժամանակ քսանհինգ ռուբլին մեկ ամբողջ շաբաթ կերակրում էր ինձ ու մորս: Ամեն օր գնում էի Այրում կայարան: Այնտեղի խանութում երկաթգծի աշխատողների համար հաց էին ստանում: Մորաքրոջս ամուսինը երկաթգծի հսկիչ էր, բայց իր բաժին հացը չէր վերցնում: Նա հարևան գյուղից էր, ու բոլոր գյուղացիների նման իրենք էին թխում իրենց հացը:

Ես գնում էի, հերթ կանգնում ու, երբ հասնում էի խանութի փոքրիկ պատուհանին, ձգվելով ոտքերիս թաթերի վրա, գլուխս ներս էի մտցնում:

— Պերճ, Մակարի հացը:

Պերճը, որին բոլորը Հացի Պերճ էին ասում, վատ էր լսում. պատերազմից վերադարձել էր համարյա խլացած: Մենակ էր ապրում, չուներ ոչ մի հարազատ ու բարեկամ: Եվ պատերազմը, մենակությունն ու դժվար կյանքը նրան ջղային էին դարձրել: Երբ ջղայնանում էր, դեմքի մկանները ցնցվում էին, վզի մկաններն ու ջղերը ձգվում, քաշվում էին վերև, աչքերը չռվում էին և նա բավականին ծիծաղելի տեսք էր ստանում:

— Պերճ, Մակարի հացը,— գոռում էի ես:

— Մակարի հացը — գոռում էին հերթի կանգնած մարդիկ:

— Մակարոն չունեմ,— ջղայնանալով, որ չի կարողանում պարզորոշ լսել, ձեռքը թափ էր տալիս Հացի Պերճը, և հերթի կանգնածներն սկսում էին քրքջալ:

— Մակարի հացը,— ավելի բարձր էի գոռում:

— Ի՞նչ մարգարին, այ լակոտ,— գոռում էր նա,— հացի հերթ է, մարգարին չունեմ:

Մեծ թե փոքր ծիծաղում էին նրա վրա, և այդ բոլորն իմ պատճառով: Վերջապես ճանաչեց ինձ, ամեն օր, երբ հասնում էի պատուհանին, նա սուս ու փուս կշռում էր իմ բաժին հացը:

Մի օր մայրս քսանհինգ ռուբլի տվեց ու ասաց.

— Վերջին փողն է, զգույշ եղիր չկորցնես, մինչև աշխատավարձ պիտի ապրենք:

Եկա կայարան: Հացը դեռ չէին ստացել: Երկու տղամարդ նարդի էին խաղում: Հետաքրքիր էր նրանց խաղին հետևելը, սկսել էի մի քիչ հասկանալ: Խաղով հրապուրված՝ նստում էի, կանգնում, ձեռքերս գրպաններս մտցնում, հանում, պտտվում նրանց շուրջը: Մեկ էլ ինչ տեսնեմ՝ աջ կողմում նստած մարդու ոտքերի մոտ մի քսանհինգանոց է ընկած: Աչքերս փայլեցին, եթե վերցնեմ, ինչ լավ կլինի: Մինչև աշխատավարձ ընդամենը քսանհինգ ռուբլի ունենք: Մոտեցա, ոտքըս դրեցի վրան: Պտտվեցի մի ոտքիս վրա, կռացա, բարձրացա, բայց վերցնել չկարողացա: Իսկ եթե այդ մարդունն է՞: Եթե հանկարծ տեսնի՞: Ի՜նչ ամոթ կլինի:

Հացը եկավ: Հուսահատված՝ թողի ու վազեցի: Հերթս հասավ: Պերճը կշռեց հացը: Ձեռքս տարա գրպանս ու քարացա, պաղ քրտինքը պատեց մարմինս:

Սկսեցի բարձրաձայն լաց լինել: Ապա վազեցի այն նստարանի մոտ, որի վրա երկուսը նարդի էին խաղում: Ոչ ոք չկար: Պտտվեցի նստարանի շուրջը: Ձայնս ավելի բարձրացավ: Դեմքս ողողվեց արցունքով: Հուսահատված վերադարձա: Նարդի խաղացողները կանգնած էին հերթում: Մոտեցա նրանց.

— Դուք վերցրիք փողը:

— Ի՞նչ փող,— զարմացած ձևացավ աջ կողմի տղամարդը:

— Քսանհինգ ռուբլի...— ես համոզված էի, որ փողը նրա գրպանում է,— տուր իմ փողը:

— Էս ու՞մ լակոտն է,— ասաց տղամարդը,— ի՞նչ փող ես ուզում, այ տղա: Ես քեզնից փող եմ վերցրե՞լ:

— Դու ես վերցրել,— հեկեկոցիս միջից գոռացի,— դու ես վերցրել,— և կառչեցի նրանից:

Տղամարդը բարկությամբ պոկեց ինձ իրենից ու դեն շպրտեց: Հացի Պերճը թողել էր աշխատանքը: Բոլորը ցանկանում էին հասկանալ, թե ինչումն է բանը: Մի կերպ զսպելով հեկեկոցս, պատմեցի, թե ինչպես եմ գցել փողը և որ այն մեր վերջին փողն էր՝ մինչև հաջորդ աշխատավարձ: Սակայն տղամարդը համառորեն պնդում էր, որ ոչ մի փող էլ չի տեսել ու սպառնում էր ականջներս պոկել:

Բոլորն աղմկում էին, դատողություններ անում: Ոմանք ինձ էին մեղադրում, ուրիշները՝ տղամարդուն: Հանկարծ այդ աղմուկի մեջ հնչեց Հացի Պերճի բարկացկոտ ձայնը.

— Նա վերցրած կլինի, նա, մարդ չի... Ես նրան պատերազմից գիտեմ:

Լռություն իջավ: Մարդիկ զարմացած մեկ Պերճին էին նայում, մեկ տղամարդուն, որը համառորեն լռում էր:

— Արի այստեղ, տղա ջան,— գորովանքով ինձ դիմեց Պերճը,— նրա դեմքի ու վզի մկանները ցնցվում էին, աչքերի բիբերը լայնացել էին:

Ես հնազանդորեն մոտեցա պատուհանին: Հացի Պերճն ինձ մեկնեց կշռած հացն ու փող: Ես շշմած կանգնել, նայում էի պատուհանից դուրս եկած նրա ձեռքին:

— Ի՞նչ ես կանգնել,— ասաց կողքիս կինը,— տալիս է, վերցրու:

— Վերցրու, վերցրու ձագս,— ասաց Հացի Պերճը,— մեծանաս-կաշխատես, կվերադարձնես: Ես քեզ պարտքով եմ տալիս,— և նրա դեմքի ջղաձգությունն անցավ, կարծես լուսավորվեց: Հուզմունքից դողացող ձեռքը դրեց գլխիս:

Երեսուն տարի քնել ու արթնացել էի և ոչ մի օր չէի հիշել այդ պարտքի մասին: Սակայն այսօր առավոտյան արթնացա հաստատ մտադրությամբ, կարծես երեկ էի նրանից պարտք վերցրել ու ահա գընում եմ վճարելու: Կհիշի՞ արդյոք ինձ: Կհիշի՞ արդյոք այդ անցած պատմությունը: Կենդանի՞ է նա, կամ չի՞ տեղա-



փոխվել, ես ոչինչ չգիտեի, բայց մի ներքին ձայն ինձ համոզում և տանում էր: Չնայած տարվա մեջ մի քանի անգամ անցել էի նրա տան մոտով, բարձրացել գյուղ՝ մորաքրոջս տեսնելու, մորաքրոջս ամուսնու՝ Մակարի հետ զրուցելու համար, նրա մասին ոչինչ չէի հարցրել և ոչինչ չգիտեի: Ժամանակը վաղուց ջնջել էր նրան հիշողությանս միջից:

Գնացքը կանգ առավ Այրում կայարանում: Ահա այն խանութը՝ նույն տեսքով, նույն վիճակով: Կարծես անցած երեսուն տարիները նրա համար ոչ մի նշանակություն չեն ունեցել: Սիրտս սկսեց թրթռալ՝ ողջ մանկությունս անցավ աչքերիս առջևից: Առանց հապաղելու քայլեցի խանութի կողմը: Իհարկե, անմտություն էր մըտածել, որ նա դեռ աշխատելիս կլիներ, սակայն ոտքերս իմ կամքից անկախ ինձ այնտեղ էին տանում:

Պատուհանից ներս նայեցի: Մի կին դարակներն էր մաքրում, դասավորում: Քայլեցի դեպի ավան, որտեղ Հացի Պերճի տունն էր երեսուն տարի առաջ: Երևի հիմա էլ այնտեղ պիտի լիներ: Արգելակվող մեքենայի ձայնն ընդհատեց մըտքերս:

— Նստիր,— մորաքրոջս տղան էր՝ Հայկը:

Նստեցի: Առաջ սլացանք:

— Գիտե՞ս ինչու եմ եկել:

— Ինձ տեսության,— ծիծաղեց Հայկը, ապա լրջացավ,— մորաքույրդ շատ կուրախանա: Հեռացանք, ուշ-ուշ ենք գալիս-գնում:

— Պերճը կա՞...

— Ի՞նչ Պերճ,— զարմացած ինձ նայեց:

— Հացի Պերճը:

— Ի՞նչ գործ ունես Հացի Պերճի հետ...

— Քսանհինգ ռուբլի եմ պարտք:

— Պերճի՞ն...— սկսեց քրքջալ,— ե՞րբ ես պարտք վերցրել:

— Երեսուն տարի առաջ:

— Էդ ո՞նց ես հիշել:

— Չէ, ես չեմ կատակում: Արի գնանք նրա մոտ:

— Չես կատակու՞մ,— լրջացավ մորաքրոջս տղան: Ապա մի քիչ լռելուց հետո ասաց,— ծանր հիվանդ էր, երևի մահանա:

— Այն ժամանակ քսանհինգ ռուբլին ինձ համար քսանհինգ հազար էր: Ես նրան քսանհինգ հազար ռուբլի եմ պարտք: Հիշում ե՞ս կայարանի խանութը: Պերճ, Մակարի հացը: Խեղճ մարդն ամեն անգամ շփոթում էր, մինչև սովորեց:

— Ոնց չէ, այն օրերի մեր ուրախությունն էր:

— Քսանհինգ հազար ռուբլի... ճիշտ է, այդքան չունեմ, բայց քսանհինգ ռուբլի կճարվի,— ծիծաղեցի ես:

— Հարցը փողը չէ,— լրջացավ Հայկը: Եվ երկուսս էլ լռեցինք, մի պահ մընացինք մեր մտքերի հետ:

— Ափսոս, որ հիվանդ է,— ցածրաձայն ասաց մորաքրոջս տղան,— մի լավ քեֆ կանեինք: Տանեինք անտառ, մի սառն աղբյուրի մոտ նստեինք, մի ոչխար մորթեինք... Կզարմանար ու շատ կուրախանար... Մենակ, լքված մարդ է, ոչ ոք չունի, հարևաններն են մեկ-մեկ նայում:

— Այն ժամանակ բոլորը նրա ձեռքին էին նայում: Նրա հաց կշռող ձեռքին...

— Էդ ո՞նց հիշեցիր, էդ ի՞նչ միտք էր, որ մտավ ուղեղիդ մեջ ու քեզ արթնացրեց...— սկսեց մտորել մորաքրոջս տղան,— զարմանալի բան է կյանքը, զարմանալի...

Լռեցինք: Մորաքրոջս տղան մեքենան վարում էր ամբողջ արագությամբ, կարծես ինչ-որ շատ կարևոր բանից ուշանում էինք: Ես ուշադրությամբ նայում էի նրա անուշ թախիծով մշուշված դեմքին և ուրախ էի, որ հասկացավ ինձ:

— Գնանք ուղիղ նրա մոտ,— ասացի ես:

— Գնանք,— համաձայնեց Հայկը և ժպտալով ազատ ձեռքը դրեց թիկունքիս: Հիանալի բան է, որ մարդիկ իրենց ներքին ջերմությունն ու սերը ձեռքերի, հայացքի, դիմախաղի միջոցով փոխանցում են միմյանց:

Ուղիղ գնացինք Հացի Պերճի տուն, սակայն արդեն ուշացել էինք՝ առավոտյան մահացել էր: Մնացի, թաղեցինք: Շատ քիչ մարդ էր եկել թաղմանը. մոռացված, ծեր մարդ էր: Եվ շատ տխուր էր նայել այդ փոքրիկ թափորին, որ աշնանային թախծոտ բնապատկերի միջով դանդաղ սահում էր դեպի գերեզմանոց:

— Չկարողացա պարտքս վերադարձնել,— տխուր ասացի մորաքրոջս տղային, երբ վերադառնում էինք գերեզմանոցից:

— Վերադարձրիր,— բազմանշանակ ժպտաց Հայկը,— հիմա քո ներկայությունը նրա համար նույնն էր, ինչ քեզ համար այն ժամանակ քսանհինգ ռուբլին:

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



ՍՈՆԱ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆ, Երևան



ԱՐԵԳ ՍՏԵՓԱՆՅԱՆ, 14 տ. Երևան

## Արևի գովքը

Անուշիկ արև, ի՞նչ լավ է, որ դու
Կապույտ երկնքում փայլում ես, շողում:
Բայց երբ ամպերն են գոռում, աղմկում,
Անձրևն է տեղում,
Ու՞ր ես թաքնվում...
Իսկ երբ կապում է սիրուն ծիածան,
Ախ, այդ ժամանակ փայլում ես նորից,
Անուշիկ արև՝
Լուսատուներից դու
Լավերից լավը...



ԱՐԹՈՒՐ ԱՌԱՔԵԼՅԱՆ, 12 տ.
ք. Սուխումի

## Ժամացույց

Ժամացույցն է աշխատում
Օրն ի բուն, օրն ի բուն,
Ժամանակն է մեզ հայտնում՝
Դին-դան-դոն, դին-դան-դոն:
Նա չի հոգնում աշխատանքից,
Աշխատում է անդադրիկ,
Ասես լինի բաբախող
Ու անքուն մի սրտիկ...

ԼՈՒՍԻՆԵ ՍՏԵՓԱՆՅԱՆ
Երևան, № 161 դպ., 4-րդ դասարան

## Զա՜ն, գարուն է...

Զա՜ն, գարուն է,
Գարուն է, տե՛ս,
Հողն է կամաց արթնանում,
Ծիլն է ելնում հողի միջից,
Նայում է ինձ ու ժպտում:
Ես սիրում եմ գարունն այսպես՝
Երբ սար ու ձոր կանաչում,
Երբ կանաչին ցող է իջնում,
Գետը խինդով կարկաչում...

ԼԻԼԻԹ ՀՈՎՍԵՓՅԱՆ
Քաջարան, Եղիշե Չարենցի անվան
դպրոց, 2-րդ դասարան



ՄԱՐԻԱՆՆԱ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Էջմիածնի շրջ., գ. Ապագա

# ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆԸ ՀԻՄԱ ԿԼԻՆԵՐ 80 ՏԱՐԵԿԱՆ





Իմ հին օրերի, իմ նոր օրերի կանաչ բարեկամ, հայրենի անտառների խորհրդավոր ծմակներով, իմ շնչավոր և անշունչ թռչնիկներ, Սևանա բալիկներիս ու Հովազաձորի խենթուկներիս հետ եկել եմ այստեղ ու կանգնել քո առաջ՝ հոգնած զինվորի նման մի պահ շունչ առնելու: Ընդունիր, ինչ թողել եմ կածանների վրա, անտառի ոսկե խաշամների մեջ, բնության զարմանալի գրքի կանաչ թերթերում, ինչ տվել եմ, քոնն է, ինչ պահ եմ տվել սրտիս, դարձյալ քոնն է՝ ընդունիր հավատով, բարեկամ, և մի նեղանա քո ընկեր Վախթանգ Անանյանից...

Վ. ԱՆԱՆՅԱՆ

Երևի չկա մի դպրոցական, որ կարդացած չլինի Վախթանգ Անանյանի գրվածքները՝ «Մանկությունը լեռներում» հրաշալի գիրքը, «Սևանի ափին» և «Հովազաձորի գերիները» արկածային վեպերը, Հայաստանի բուսական և կենդանական աշխարհի մասին պատմող ընտիր պատմվածքները: Դրանցից շատերը կոչվում են «որսորդական», բայց պատմում են ոչ այնքան որսի մասին, որքան կենդանական աշխարհն աչքի լույսի պես պահպանելու:

Անանյանն ամենից շատ ընթերցվող, ուրիշ լեզուներով ամենից շատ թարգմանված հայ գրողներից է: Նրան կարդում են ռուսերեն և ուկրաիներեն, վրացերեն և լիտվերեն, չեխերեն և գերմաներեն, արաբերեն և բենգալերեն, ճապոներեն և չինարեն...

Նա վախճանվել է 1980-ին: Եթե ապրեր, հիմա կլիներ 80 տարեկան:

Վախթանգ Անանյանին հափշտակությամբ կկարդան նաև գալիք սերունդները, որովհետև նրա թողած գրական հարուստ ժառանգության լավագույն էջերը երբեք չեն կորցնի իրենց հրապույրը. պատումի ազատ շունչ, հայրենի բնաշխարհի վարակիչ սեր, բնության պատկերման անկրկնելի վարպետություն, վառվռուն գույներ, ժողովրդական ոճերով ու դարձվածքներով հարուստ, համով-հոտով հայերեն:

ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ

ԳՈՀԱՐ ՖԻԼՈՅԱՆ

# Թեյմուրազիկը

(եղելություն)

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Եթե եղել եք գազանանոցում, անշուշտ գիտեք, որ ամենահետաքրքիրը գիշատիչների բաժինն է, հատկապես կատվազգիների ընտանիքը: Ահա գազարագույն, զոլավոր վագրի վանդակը, նրա կողքին՝ գեղեցիկ, ասես, նկարված ընձառյուծը, այս վանդակներից ձախ՝ հովազը, որ շատ նման է վագրի, և հաստամարմին յագուարը, ձիգ ու բարձրահասակ սերվալը, արտաքինից լայնկայի նմանվող լուսանը և կատվազգիներից ամենագրավիչը՝ առյուծը:

Ոչ մի բացականչություն չի կարող առյուծին ստիպել նայելու մարդուն:

Իմանալով իմ համարձակ բնավորությունը, ինձ գազանանոց չէին տանում, քանի դեռ չափահաս չէի դարձել: Փոքր ժամանակ ես չէի վախենում ոչ շղթայված, կծող շնից, ոչ պատահաբար բռնըված արծիվներից, գայլի կամ աղվեսի ձագերից: Աներկյուղ ափիս մեջ էի առնում գազանին կամ թռչունին, և ոչ մի անգամ ինձ չկծեցին: Այդ պատճառով ոչ ոք հույս չուներ, որ ես վանդակաձողերի արանքից ձեռքս չեմ մտցնի և չեմ փաղաքշի վագրին կամ առյուծին, ինչպես մի անգամ շոյեցի վանդակում նստած կատվառյուծին:

Թբիլիսյան գազանանոցում էգ առյուծը ծնեց երկու ձագ: Մեկը մահացավ մի քանի ժամից, իսկ երկրորդին, որպեսզի նույն ճակատագրին չարժանանա, գազանանոցի դիրեկտոր Բոյկոն իր տուն տարավ և որոշեց տնային պայմաններում դաստիարակել մոսկովյան գազանանոցի մատղաշների բաժնի վարիչ Վերա Չապլինայի օրինակով, որը Կինուլի էգ առյուծին փոքրուց էր պահել: Կինուլիի մասին շատ էին գրում թերթերում և ամսագրերում, իսկ ինքը՝ Վերա Չապլինան գիրք գրեց, թե ինչպես էր Կինուլին ապրում մոսկովյան իր ընդհանուր բնակարանում:

Նախքան Կինուլիի հայտնվելը, ես առնչություն ունեցա հայտնի առյուծ սանձարկուի՝ Բորիս Էդերի հետ: Ես քսան տարեկան էի, անցնում էի Թբիլիսիի հին կրկեսի կողքով, տեսա Բորիս Էդերին, որը կանգնել էր արևի տակ, մուտքի առջև և բռնել ոտքերի մոտ հանգիստ նըստած առյուծի շղթան: Մարդիկ հուսալի հեռավորությունից նայում էին: Ես նույնպես կանգնեցի, նայում էի, հետո հարցրի դերասանին.

— Կարելի՞ է նրան փաղաքշել:

— Փաղաքշեք,— ասաց նա՝ նույնիսկ չնայելով ինձ:

— Լու՞րջ եք ասում,— ես չէի հավատում:

— Համարձակ մոտեցեք,— հաստատ ասաց նա ինձ:

Ես չոքեցի հսկայական առյուծի առաջ և պատրաստվեցի շոյել նրան: Իմ ձեռքին լրագիր կար, ես սկսեցի գետնի վրա լրագիրը այս ու այն կողմ շարժել, ինչպես անում են կատուների հետ, և առյուծը սկսեց գլխով հետևել լրագրի շարժումներին: Հավանաբար նա ձագ էր, չնայած իր խոշորությանը: Բորիս Էդերը ոչ մի նշանակություն չտվեց իմ քաջությանը: Նա ինձ ոչինչ չասաց: Բայց որոշ ժամանակ անց, երբ սկսեցին գրել Կինուլիի մասին, ես այն եզրակացության հանգեցի, որ ձեռնասուն առյուծին փաղաքշելը մի մեծ բան չէ: Էդերի մոտ ես չգնացի, բայց առյուծին ձեռք տալու և շոյելու մոլի ցանկությունը ինձ հանգիստ չէր տալիս: Ահա այդ ժամանակ հայտնվեց Թեյմուրազը:

Իմանալով, որ Բոյկոյի մոտ գտնվում է առյուծի ձագ, ես առանց հրավերի դարձա նրանց մշտական հյուրը:

Չեմ կարող նկարագրել, թե ես ինչպես էի սիրում այդ փափուկ և նուրբ արարածին: Բոյկոները ինձ այնքան էլ սիրալիր չէին ընդունում, բայց աստիճանաբար ընտելացան և նույնիսկ գոհ էին իմ այցելությունից՝ անմիջական բնավորությանս պատճառով: Ամենից շատ ուրախանում էր Թեյմուրազը (այդպես էին անվանում առյուծի ձագին): Նա դունչը խոթում էր ափիս մեջ, իսկ երբ ես դեմքս էի մոտեցնում նրան, նա դունչը մոտեցնում էր քթիս, բերանիս, և դրանք ինձ համար ամենաախորժելի զգացումներն էին: Թեյմուրազը իմ բերած նվերները՝ կոտլետներ, նրբերշիկներ, խոզի-

ներ, ոչ հափշտակում էր և ոչ էլ վրա ընկ-նում դրանց: Սկզբում նստում էր փորի վրա, վերցնում, մի քանի անգամ մի թա-թից մյուսին էր շպրտում, այնուհետև լի-զում էր, ապա նոր միայն ուտում:

Երբ ես գալիս էի, Թեյմուրազը դիմա-վորում էր ինձ մեջքի վրա պառկած: Նա այդպես էր արտահայտում իր ուրախու-թյունը: Ոչ մեկին այնքան չէր սիրում, որ-քան ինձ:

Ցավոք, մեր տնեցիները չէին բաժա-նում իմ զգացմունքը, ընդհակառակը, դժ-գոհում էին: Ծանր հիվանդությունից ա-պաքինվելուց հետո մեկնեցի Մոսկվա՝ վերապատրաստման: Երբ վերադարձա, հայրս ծանր հիվանդ էր, և իմ սիրասուն գազանը հետին պլան մղվեց: Երբ հորս վիճակը լավացավ, գնացի Չելյուսկինցի-ների փողոց, որտեղ ապրում էին Բոյկո-ները:

Հուզմունքից սիրտս ավելի արագ էր բաբախում: Յոթ ամիս Թեյմուրազիկը ինձ չէր տեսել, արդյո՞ք կճանաչեր:

Ես անհամբերությամբ սեղմեցի զանգի կոճակը: Դուռը բացեց մայր Բոյկոն՝ Ա-նաստասիա Արտեմովնան: Տանը չարա-գուշակ լռություն էր տիրում: Խելագարի պես, առանց ողջունելու, անմիջապես ուղղվեցի այն սենյակը, որը թեյմուրազ-յան էր կոչվում: Սենյակը դատարկ էր: Ես արագ վազեցի ճաշասենյակ, որտեղ նստած էին Բոյկոները՝ կինը, երկու տղա-ները՝ Վովան, Վիտյան, և տատիկը:

— Որտե՞ղ է Թեյմուրազը,— ահով հարցրեցի ես:

— Մոսկվայում է,— մեղավոր տոնով պատասխանեց տատիկը:

— Մոսկվայու՞մ,— զարմացած հարց-րեցի ես,— ինչու՞ է Մոսկվայում:

— Նա այնտեղ մատղաշների բաժան-մունքում է, այնտեղ նրա համար ավելի լավ կլինի,— մրթմրթաց Բոյկոն:

— Իսկ մի՞թե նրա համար այստեղ վատ էր: Այդ բոլորը արել եք, որպեսզի ես ձեզ մոտ չգամ,— ավելացրի ես:

— Երևակայության զոռ մի տուր, Գոհար... Դուք հրաշալիորեն գիտեք, որ Ձեր այցը մեր տուն ցանկալի է եղել... Մենք նույնիսկ առանց ձեզ տխրում էինք, — ասաց Բոյկոյի կինը՝ Գալինա Մաք-սիմովնան:— Իսկ Թեյմուրազիկն ինչպե՞ս էր տխրում:

— Նրան տանը թողնել անհնարին էր, — կնոջը ընդհատեց Բոյկոն:

— Ինչու՞:





— Գիտե՞ք, թե վատ տրամադրությունը ինչպես են արտահայտում աղյուծը և ընդհանրապես կատվազգիները,— հարցրեց գազանանոցի դիրեկտորը, չպատասխանելով իմ հարցին:

— Պոչով զայրացած հարվածում է հատակին,— առանց մտածելու պատասխանեցի ես:

— Ճիշտ է, ես համոզված էի, որ դուք գիտեք այդ,— գլուխը թափ տալով ասաց Բոյկոն:— Եվ այդպես վերջին շրջանում Բոյկոն շատ դյուրագրգիռ էր դարձել, սեղմում էր ականջները, պոչը նյարդայնորեն խփում էր հատակին:

Պարզ էր, վախեցել էին և ազատվել ձեռնասուն աղյուծից: Գուցե իմ բացակայությունն էր խաթարել նրա հեզահամբույր բնավորությունը:

Գուցե և ոչ... Նա թեպետև մատղաշ, բայց բավականին փարթամ աղյուծ էր: Աստիճանաբար ես ավելի ուշ-ուշ էի մըտածում Թեյմուրազի մասին, հոգիս հանգիստ էր, որ նրան տեղափոխել են Մոսկվա, կարծում էի այնտեղ ավելի լավ կլինեն, քան թբիլիսյան գազանանոցում:

Այդպես վերջացավ աղյուծի հետ իմ շփումը, որը ինձնից խլում էր անչափ շատ ժամանակ: Եվս վեց ամիս, և ես մի անգամ փողոցում տեսա մի ծանոթ աղջկա՝ իր պաշտոնակից ընկերների՝ կիրովականցի երկու երիտասարդի և երկու աղջկա հետ: Մենք ծանոթացանք: Գարնանային տաք օր էր: Թբիլիսյան գարնանային հրաշալի օրերից մեկը: Ես նըրանց ճոպանուղի տարա, հետո ծանոթացրի Թբիլիսիի տեսարժան վայրերի հետ: Ապա տարա գազանանոց: Երբ մենք կանգնեցինք աղյուծի վանդակի մոտ, ես դիմեցի ընկերակիցներիս.

— Նայեք այս աղյուծին...

Ես ուզում էի նրանց ուշադրությունը հրավիրել աղյուծի անտարբեր հայացքի վրա, երբ անսպասելի հրաշք տեղի ունեցավ... Ես դեռ չէի հասցրել ուզածս ասել, աղյուծը վեր թռավ, նայեց ինձ և ցատկեց, կանգնելով ետևի ոտքերի վրա:

— Թեյմուրազի՛կ,— գոչեցի ես, արագ մոտենալով վանդակին և վանդակաձողերի արանքից հափշտակեցի նրա գլուխը, պատրաստվելով համբուրել դունչը:

Պարզվում էր, որ Թեյմուրազիկին ոչ մի տեղ չէին ուղարկել: Պարզապես ինձ խաբել էին: Թբիլիսյան գազանանոցը վերըստին շարունակեց ինձ համար գոյություն ունենալ:

ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆ

## Հովն Սարգիսն է

Ինչ անկարգ բան որ անի.
Մեկի վրա կբարդի:
Հանկարծ բաժակ թե կոտրեց.
Կասի՝ Հովոն դա արեց:
Լաց էր լինում. ես տեսա.
— Ո՞վ է լալիս. դե ասա:
Մարդու զարմանքն է գալիս.
Ասաց՝ Հովոն է լալիս:
Հովոն լինի. չլինի.
Մեղավորը կլինի:
Մի օր ասի՝ այ Սարգիս.
Ճիշտ պատասխան տուր հարցիս
Ի՞նչ Հովո՝ երբ այդ դու ես...
Ասաց Հովոն ես եմ. ես:

ՌՈՒԶԱՆ ԱՍԱՏՐՅԱՆ

## Բալենի

Քարերի մեջ. փոսում խոր.
Մի ծիլ տեսա ես մի օր.
Ասի՝ պապի, նայիր, տես,
Այս ինչ ծիլ եմ գտել ես:
Պապս եկավ. լուռ նայեց
Ու քթի տակ ծիծաղեց:
— Բալենի է, այ Մհեր,
Ի՛նչ ես կանգնել. բահը բեր.
Բալի կորիզ է ընկել
Աճել է ու մեծացել:
Հիմա. զգույշ կհանենք
Ու մեր այգին կտանենք.
Կխնամենք՝ մեծանա.
Քո բալենին թող դառնա:
— Պապ. այդ ինչպե՞ս իմացար.
Որ ծաղիկ չէ սա. այլ ծառ:
Ժպտաց պապս.— Է՛. Մհեր.
Ջուր չեմ դարձել ալեհեր.
Երբ իմ նման պապ դառնաս.
Դու էլ շատ բան կիմանաս:

# Քարերի գիշերային պարը

Երբ գիշեր իջավ
Ճամփաներին,
Մի քար շշնջաց
Կողքի քարին:

—Հերիք է տեղում
Ընկած մնանք:
Արի այս ճամփով
Ելնենք, գնանք:

Բերանները մեր
Հերիք փակենք...
Զրուցենք մի քիչ,
Մի քիչ երգենք:

— Ինչպես էի ուզում
Ասել դա քեզ,
Չէ, դու ինձանից
Երկար կապրես,—

Ասաց կողքի քարն
Ու վեր թռավ,
Եվ նրանք մեկտեղ
Ճամփորդ դառան:

2.

Դոփ-դոփ,
Դոփ-դոփ,
Քայլեցին:

Գիշերվա մեջ
Խնդությունից
Փայլեցին:

3.

Եվ գնացին երկուսով՝
Քարեր երկվորյակ:
Հողը թնդում էր, դողում
Նրանց ոտքի տակ:

— Մենք ենք հողը հող պահում,—
Մեկն ասաց կրքով,—
Բայց ուրիշներն են հաճախ
Զարդարվում փառքով:

— Այո, այո,— ընկերը
Գլուխն օրորեց,—
Դու տեսե՞լ ես ինչեր են
Կառուցել քարից:

Ես մի անգամ անցել եմ
Քաղաքի միջով,
Լիքն էր ամբողջ քաղաքը
Քարե քրքիջով:

Ի՜նչ կամուրջներ ու սյուներ,
Պալատներ շողուն...
Եվ արևը նրանց հետ
Խնդում էր, խաղում:

Կուզեի ինքս էլ մնալ,
(Քեզնից ի՞նչ պահեմ),
Եվ զարդարել մի կամար
Կամ՝ դառնալ մի վեմ:

Սակայն, կարծր ես, ասացին,
Չի լինում տաշել:
Եվ ինձ այստեղ նետեցին
Մի խավար գիշեր:

4.

Այսպես՝ տարված զրույցով,
Գնացին երկար:
Ճամփան նրանց դուրս բերեց
Մեկ այլ ճանապարհ:

Շուրջը լեռ էր ու բլուր,
Անթիվ քարաժայռ:
Մի ժայռն ասես փիղ էր մեծ,
Մեկ ուրիշը՝ գայլ:
Մեկը ցուլ էր կատաղի՝
Պոզերը սրած,
Մեկը հովազ էր դեղին՝
Ցատկելու պատրաստ:

Կանգնել էին լուռ ու մունջ
Լուսնի լույսի տակ:
Ճամփորդ քարերն զգացին
Նրանց շունչը տաք:

Նայեցին վեր և... զրույցն
Իրենց մոռացան:
Այդպես նրանց դեմ-դիմաց
Մի պահ քարացան:

Իսկ երբ հետո ուս-ուսի
Ելան նորից վեր,
Սկսեցին միասին
Բարձրաձայն երգել:

Երգում էին ու գնում
Ժայռերի միջով,
Եվ արձագանքն էր զնգում
Բյուր ելևէջով:

5.

«Քար ենք մենք,
Քար ենք մենք,
Քար ենք մենք,

Բայց մենք էլ
Սիրտ ունենք,
Ունենք երգ»:
Եվ հանկարծ... մի ժայռ
Պոկվեց տեղից.
Նա, որ հովազ էր
Թվում դեղին:

Գլորվեց թափով,
Կանչեց՝ եկա՜...
Եվ տարավ իր հետ՝
Որին դիպավ:

Իսկ քիչ անց արդեն,
Ահազարհուր,
Առաջ մղվեցին
Լեռ ու բլուր:

Այդպիսի աղետ
Դեռ չէր եղել:
Քարերի հուք էր,
Քարե հեղեղ...

7.

Եվ երգ ու դոփյուն
Խառնվեցին:
Ամեն քար ասես
Ձի էր, մի ձի,

Ուզում էր մեկը
Մեկից անցնել,
Փորձում էր մեկը
Մեկին հեծնել:

Խենթ խնդություն էր,
Քրքիջ, կատակ...
Արշավում էին
Աննպատակ:

Ա՜խ, քարեր, քարեր ոգևորված...
Դեռ կպարեին նրանք երկար,
Եթե երկնքից մի կռնչոց
Ցած չընկներ հանկարծ, իբրև մի քար:

Արծիվն էր: Օդում պտտվելով,
Հարցնում էր անհույս՝ որտե՞ղ թառեմ...
Իր բույնը փնտրող, լացող մի մուկ
Ծվծվում էր՝ թե ուր, ես ու՞ր մտնեմ:
Շուրջը ամենուր լաց էր ու կոծ,

Չէր մնա քարն էլ հո անտարբեր,
Եվ սթափվեցին քարերը ողջ
Ու շշնջացին՝ սա մեղք է մեծ:

Մենք էլ աշխարհում մեր տեղն ունենք
Եվ կապված ենք բոլորս իրար,
Թե միմյանց մասին չմտածենք,
Քարն էլ չի մնա քարի վրա:

10.

Արևը չէր ծագել դեռ,
Քարերն առան թև,
Իրենց տեղերը թռան
Հավքի պես թեթև:

Դարձան ժայռեր ու բլուր՝
Բերաններով փակ,
Որ հողն հաստատ միշտ մնա
Մեր ոտքերի տակ:



Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ԲԱԳՐԱՏ ՈՒԼՈՒԲԱԲՅԱՆ

# ԱՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

Հայկական բարձրավանդակը հյուսիս-արևելքում ավարտվում է լեռնային ու նախալեռնային զարմանահրաշ մի երկրամասով, որը պատմական տարբեր ժամանակաշրջաններում հայտնի է եղել տարբեր անուններով՝





Արցախ, Փոքր Սյունիք, Խաչեն, Ղարաբաղ: Այստեղ լեռնային, նախալեռնային ու դաշտային գոտիներն այնպես փութկոտ են միմյանց փոխարինում, որ կարող է թվալ, թե բնությունը պարզապես իրար է հյուսել այդ գոտիները, ահեղ թրահարվածներով երկրամասը ճեղքել լեռնային շերտերի, որոնցից յուրաքանչյուրը եզերված է գետերով ու գետակներով: Իսկ եթե հնարավոր լինի նայել երկնքից, ապա այդ գետերից յուրաքանչյուրը կերևա որպես ճերմակ ու շողշողուն մի թել, որին մեկ աջից, մեկ ձախից հյուսված են գոհարներ՝ երկրամասի հայության հին ու միջնադարյան կոթողները:

Լեռնային Ղարաբաղում ժողովրդական ասքն ու առասպելը, հնավանդ զրույցն ու խրատը մարդուն ուղեկցում են ամենուրեք: Ուղեկցում և անպայման տանում են դեպի մի ուշագրավ տեղ, ուր դու կտեսնես հնադարյան մարդու բնակատեղի կամ բուժիչ ջրի աղբյուր, մենավոր խաչքար կամ միջնադարյան իշխանական ապարանք, հազարամյա վանական մի համալիր կամ ժայռակոփ մի բերդամրոց, որին զարկվել են օտար բռնակալները, զարկվել ու ջարդվել...

Հարյուր տարի առաջ հնագետ Մակար Բարխուտարյանը հին ավանդության հետքերով գնացել է Դիզակի (այժմ՝ Հադրութի շրջան) Ազոխ գյուղի թիկունքում բացված վիթխարի քարանձավը և նկարագրել նրա գաղտնարանները: Այնտեղ գտնվել են քարե գործիքներ, ինչպես նաև նախամարդու գեղարվեստական ինքնագործունեության առաջին նմուշներից՝ կնոջ քարե մի արձանիկ:

Վերջին տարիներին Ազոխի քարանձավը դեպի իրեն է քաշել բազմաթիվ հնագետ հետազոտողների, որոնք հանգել են այն եզ-

րակցության, որ այնտեղ եղել է աշելյան (հին քարե դարի) մարդու բնակատեղի։ Ազոխի քարանձավը երկար դարեր ծառայել է մեր վաղնջական նախնուն, որպեսզի նա քարե գործիքներով իր կարիքները հոգալուց հասներ գեղարվեստական ճաշակն ու հավատը քարի վրա քանդակելու մակարդակին։

«Ազոխ» հայերեն նշանակում է չհասած, թթու խաղող։ Բարձրադիր գյուղի տարածքում հիմա էլ այս ու այնտեղ, հատկապես քարանձավի շրջակայքում հանդիպում են վայրի խաղողի թփեր։

Լեռնային կածաններն Ազոխից տանում են դեպի շրջանի մյուս տեսարժան վայրերն ու հուշարձանները։ Հարավում, Դիզափայտ (Դեզի փայտ) սրագագաթ լեռան վրա է գտնվում Կատարո վանքը, որը, դարձյալ ըստ ավանդության, կառուցվել է 4-րդ դարի ավրա)։ 7-րդ դարից սկսած Գտչավանքը Դիզակ գավառի հոգևոր կենտրոնն է եղել և իր այս դերում մնացել է մինչև 19-րդ դարը։ Տեղիս վերջին նշանավոր հոգևոր գործիչը, որի մասին երախտագիտության խոսք է գրել Րաֆֆին, եղել է Առաքել վարդապետը։ Գտչավանքում և շրջակայքում պահպանված գրչագրերի հիման վրա նա գրել է երեքհատորանոց մի պատմություն, որից մեծապես օգտվել է Րաֆֆին իր «Խամսայի մելիքությունները» հյուսելիս։

Իսկ հռչակավոր Գորոզ լեռան վրա թառած Գտիչ ամրոցը հայոց պատմության մեջ նշանավոր է նրանով, որ 9-րդ դարի կեսին հենց՝ այստեղ կոտրվել է արաբ զորապետ Բուղայի ավերիչ արշավանքի թափը։ Մովսես Դասխուրանցու և Թովմա Արծրունու պատմելով՝ արյունռուշտ Բուղայի 200 հազա-





Լուսանկարները՝ ՄԱՐՏԻՆ ՇԱՀԲԱԶՅԱՆԻ

րանոց բանակը մահ ու ավեր սփռելով, Հայաստանի հարավից հասել էր հյուսիսային նահանգները, ասպատակել Վրաստան, ապա նույն թափով հասել Արցախ-Ղարաբաղ։ Եվ ահա այստեղ Գտիչ բերդին ապավինած արցախական փոքրաքանակ զորքը Եսայի Աբու-Մուսե Առանշահիկ իշխանի գլխավորությամբ կասեցրեց թշնամու հաղթական երթը։ Բուղան մեկ տարվա ընթացքում 28 անգամ ճակատամարտի գնաց Գտիչի դեմ և 28 ռաջին կեսին՝ այն նահատակների մասունքների վրա, որոնք ընկել էին մաքուր ասպատակիչների դեմ մղված ճակատամարտում։

Հադրութի շրջանի հյուսիս-արևմտյան մասում, այնտեղ, ուր Իշխանագետն է սկիզբ առնում, այժմ էլ կանգուն են Գտիչ ամրոցի մնացորդները, իսկ մոտակայքում Գտչավանքի գմբեթազարդ տաճարն է։ (Երկուսի անունները էլ կազմված են «գյուտ» արմատից, կառուցվել են առաքելական մասունքների

անգամ էլ պարտված վերադարձավ Մուղանի դաշտի իր զորակայանը: Եվ երբ տեսավ, որ քաջ արցախցուն անհնար է ծունկի բերել ազնիվ կռվում, դիմեց խարդավանքի. արաբ խալիֆից սուտ հրավեր ուղարկեց Եսայի իշխանին, իբր, խալիֆն ուզում է խաղաղ բանակցություններ վարել Գտիչի տիրոջ հետ: Իսկ երբ Եսային հասավ Բաղդադ, նրան նենգորեն կալանավորեցին և տաժանակրության քշեցին հայ մյուս իշխանների հետ:

Գտիչի մոտ է նշանավոր Տող ավանը, որ ուշ միջնադարյան Դիզակի մելիքների նստավայրն է եղել: Այստեղ է գտնվում 18-րդ դարի հակաթուրքական կռիվների հերոս մելիք Եգանի ապարանքը՝ շքամուտքի շուրջը փորագրված արձանագրությամբ. «Ես թողեցի ոչ Հայաստանս եաիր տալու» («Ես չթողեցի, որ Հայաստանից գերի տարվի...»), ազգային-ազատագրական պայքարի ու քաջագործությունների մեջ անցած իր կյանքն այսպես է բնութագրել մելիք Եգանը:

Եթե առավոտյան պարզ լույսին Տողաարից կամ Գտիչից նայես դեպի արևելք, հեռվում՝ Մուխանք դաշտի բերանին, կերևա Ամարասի վանական ճերմակ համալիրը: Մեր հինգերորդ դարի պատմիչ Փավստոս Բուզանդը գրի է առել մի ավանդություն, ըստ որի այստեղ եկեղեցի է հիմնադրել Գրիգոր Լուսավորիչը, և այն կառուցել— ավարտել է նրա թոռ Գրիգորիսը՝ Արցախական աշխարհի առաջին եպիսկոպոսը: Ծուրջ 17 դար է անցել այն օրերից, և այս նախնական եկեղեցին պահպանվում է ուշ միջնադարում նրա վրա կառուցված հսկա տաճարի ներսում, բեմի տակ: Եվ հիմա որպեսզի տեսնես այն հրաշակերտը, պետք է քարե աստիճաններով իջնես վար և լույս վառես բազմադարյան կառույցի առաջ:

Ամարասից նեղ ու լայն ճանապարհները տանում են դեպի լեռնային բնաշխարհի չքնաղ անկյունները: Հենց մոտիկ Ծարտար գյուղում կարելի է տեսնել միջնադարյան մի գեղեցիկ հուշարձան՝ Եղիշե Կույսի եկեղեցին, որի քանդակազարդերում փայլում են մեր միջնադարյան աշխարհիկ կյանքի բազմազան դրվագները: Կտեսնես նաև նոր գյուղի մշակույթի փառահեղ պալատը՝ կառուցված Երևանի Օպերային թատրոնի ճարտարապետության փոքր-ինչ սեղմված նախագծով:

Այս կոթողի հիմքը փորելիս բացվել է հեթանոսական մի տաճար, որի խոյակներից մեկն էլ այժմ պահվում է Ստեփանակերտի մարզային թանգարանում:

(Ծարունակությունը հաջորդ համարում):





ՅՈՒՐԻ ԿԱՄԵՆԵՑԿԻ

# ՍԻՐՈ ՏԱՌԱՊԱՆՔՆԵՐ

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ստյոպան լսում էր ուսուցչին և ոչինչ չէր հասկանում: Նա կլանված նայում էր առաջին նստարանին նստած գերազանցիկ Մաշա Կուզնեցովայի ծոծրակին և ջանում որոշել նրա մազերի գույնը:

—Սամոֆալով,— դիմեց ուսուցիչը,— ասա մեզ, ի՞նչ կլինի...

Ուսուցչի ասածներից Ստյոպան միայն մի բան հասկացավ, որ իրեն՝ Ստյոպա Սամոֆալովին, հիմա «երկու» կնշանակեն: Եվ նա չսխալվեց:

— Նայիր, տես, թե ինչ օրի է հասել քո որդին,— ասաց մայրիկը, օրագիրը տալով հայրիկին:

— Ինչու՞,— հարցրեց հայրը, հայացքն ուղղելով չաղլիկ երկուսին:

— Ես նայում էի Կուզնեցովայի ծոծրակին,— ազնվորեն խոստովանեց Ստյոպան:

— Դա այն մեծ երկնագույն աչքերով աղջի՞կն է,— հետաքրքրվեց հայրիկը:

— Ես չգիտեմ: Ես նայում էի ծոծրակին, — կրկնեց Ստյոպան:

— Նա սիրահարվել է,— ողբերգական տոնով հայտարարեց մայրիկը:

— Սերը տարիք չի հարցնում,— բազմանշանակ ժպտաց տատիկը:

— «Մեծերին պետք է լսել»,— մտածեց Ստյոպան:

Այդպես առաջին անգամ նա իմացավ, որ սիրահարվել է: Բայց իրեն չկորցրեց:

— Ալլո՜, Վալյա՛, դու ե՞ս: Այդ ես եմ,— Ստյոպան պատահաբար չզանգեց Վալյա Մորոզովային:

Նա դասարանում հայտնի էր որպես կազմակերպված և կյանքն իմացող մարդ:

— Ես սիրահարվել եմ Կուզնեցովային: Հիմա ի՞նչ անեմ:

— Բանաստեղծություններ գրիր, ի՞նչ պետք է անես,— երկար-բարակ մտածելով, պատասխանեց ընկերը:

«Ընկերն ընկերոջը վատ խորհուրդ չի տա»,— որոշեց Ստյոպան և սկսեց բանաստեղծություն հորինել:

Նույնիսկ մի հետաքրքիր հեռուստահաղորդում բաց թողեց, բայց բացի մի տողից ոչինչ չկարողացավ գրել: Սակայն այդ մի տողը շատ ուժեղ ստացվեց:

— Սիրում եմ քեզ, Կուզնեցովա,— անկողնում պառկած անվերջ կրկնում էր Ստյոպան, հաղթահարելով քունը:

Իսկ հաջորդ օրը ուսուցիչը տվեց նույն՝ նախորդ օրվա հարցը:

«Սիրում եմ քեզ, Կուզնեցովա»— քիչ էր մնում բերնից թռչներ Ստյոպան, բայց հազիվ կարողացավ լռել:

— Երկու եռյակների գումարով դու ստանում ես չորս բալ,— հայտարարեց Գրիգորի Վլադիմիրովիչը, այնպես սրընթաց, ասես ձնավոր չմշկավազքի և ոչ թե մաթեմատիկայի պարապմունք էր անցկացնում:

«Եվ սա՞ է սերը»,— ղժգոհ մտածեց Ստյոպան,— առանց դրա էլ ոնց էլ լինի, յոլա կըգնամ»:

Երեկոյան նա ջանասիրաբար սովորեց դասերը, և երբ Գրիգորի Վլադիմիրովիչը նորից նրան գրատախտակի մոտ կանչեց, Ստյոպան ուսուցչին զարմացրեց իր գիտելիքների խորությամբ: Դրանք այնքան շատ էին, որ նույնիսկ Կուզնեցովան զարմացավ:

Դասերից հետո նա մոտեցավ Ստյոպային:

— Ասում են, որ դու սիրահարված ե՞ս ինձ,— գործնական տոնով հարցրեց Կուզնեցովան:

— Ասո՞ւմ են,— թերահավատ պատասխանեց Ստյոպան:

— Իսկ դու գիտե՞ս, երևում է,— շարունակեց իր միտքը Կուզնեցովան,— միայն խորը զգացմունք ապրած մարդը կարող էր այդպես արագ ուղղել իր գնահատականները..

Ստյոպան չէր վիճում: Զգացմունքները նա չէր չափել, էլ ինչ վիճեր: Այ, իր ջերմությունը նա ամեն երեկո չափում էր: Հանկարծ բարձրանար, էլ դպրոց գնալու հարկ չէր լինի:

Իսկ Կուզնեցովայի մտքերն անվերջ հոսում էին:

— Իզուր չէ, որ ասում են սերը բարձրացնում է և վեհացնում...

Ստյոպան, իհարկե, ցանկանում էր ազնիվ լինել, բայց ոչ այդ գնով:

— Գիտե՞ս ինչ, Կուզնեցովա,— ասաց նա:— Դու ուրիշներին մի հավատա:

— Ի՞նչ մտքով,— հարցրեց Մաշան:

Ստյոպան չպատասխանեց: Նա գնում էր և մտածում, որ եթե թշնամիները իրեն գերի վերցնեն, ամեն տանջանք կտանի, իսկ սիրո տառապանքները իր համար չեն:









# Աֆղանուհիները Հայաստանում

Երեք տարի առաջ հեռավոր Աֆղանստանից մի խումբ աղջիկներ եկան Երևանի № 24 պրոֆտեխնիկական ուսումնարանում սովորելու: Այս տարի ուսումնարանը տվեց աֆղան աղջիկների երկրորդ շրջանավարտների սերունդը: Նրանք, ստանալով ջուլհակուհու և մանող բանվորուհու մասնագիտություն, կմեկնեն աշխատելու իրենց հայրենիքի թեթև արդյունաբերության ձեռնարկություններում:

Աֆղանցի աղջիկները իրենց մասնագիտական պրակտիկան անցկացնում են Երևանի նուրբ բրդյա գործվածքների կոմբինատում (այստեղ պրակտիկայի են գալիս նաև Լենինյան շրջանի մի շարք դպրոցներից): Կոմբինատի մանարան և գործող արտադրամասերի առաջավոր բանվորուհիները նրանց հաղորդում են

մասնագիտական նրբությունները ու գաղտնիքները: Բոլորովին վերջերս ափդան աշիկների տեսական ու գործնական գիտելիքները ստուգելու համար կազմակերպվեց մասնագիտական վարպետության մրցույթ:

Մրցույթը, որը նվիրված էր երիտասարդության համաշխարհային 12-րդ փառատոնին, բաղկացած էր երկու փուլից: Մրցույթի տեսական փուլը անցկացվեց ուսումնարանի մասնագիտական սարքավորումներով հագեցած կաբինետներում: Ստուգվեցին ապագա ջուլհակուհիների և մանող բանվորուհիների գիտելիքները գործող մեքենաների և մանող սարքավորումների արտադրության տեխնոլոգիայի վերաբերյալ: Մրցույթի ժյուրին, որի կազմում ընդգրկված էին ուսումնարանի լավագույն վարպետները ու կոմբինատի ճանաչված վարպետ-դաստիարակները, գոհ մնաց ուսանողուհիների մտածված ու խելացի պատասխաններից:

Մրցույթի հաջորդ փուլը՝ գործնական գիտելիքների ստուգումը, տեղի ունեցավ հաջորդ օրը, կոմբինատի մանող և գործող արտադրամասերում: Այստեղ ևս ափդան ուսանողուհիները տեսական գիտելիքները հմտորեն զուգակցելով գործնականի հետ, հուսախաբ չարեցին վարպետ-դաստիարակներին և իրենց կտրուկ, հնարամիտ գործողություններով այս անգամ էլ գոհացրին ժյուրիի անդամներին: Մեքենաների շուրջը ծավալված աշխույժ մրցությունում ոչ ոք, չէր ուզում զիջել, սակայն մրցույթի ծրագիրը բոլորից լավ կատարեցին քույրեր Մախումուդա և Ծաքիրա Ամզաները, Սաջնդա Նուրին և մանող բանվորուհիներ Սեդիկա Պագսին, Ռոխշանա Արաշը և Խութսիյա Սալեխին: Նրանք էլ նվաճեցին բոլոր մրցանակային տեղերը:

Մրցույթի ժամանակ հաշվի են առնըվում նաև տեխնիկական անվտանգության կանոնները պահպանելու կարողությունը:

Մրցույթն ավարտվեց, սակայն բարեկամությունը շարունակվում է: Մի քանի ամիս հետո աղջիկները հրաժեշտ կրտան իրենց համար հարազատ դարձած ուսումնարանին, կոմբինատին ու Երևանի իրենց բոլոր-բոլոր բարեկամներին և հայրենիք կվերադառնան մասնագիտական գիտելիքներով ու Հայաստանի մասին բարի հիշողությամբ:

**ԱՐՇԱՎԻՐ ԳԱԶԱԶՅԱՆ**

# Հադիս սարի գաղտնիքները



Օգոստոս ամիսն էր:

Ինձ նոր-նոր նշանակել էին Աբովյանի շրջանի պատմության և կուլտուրայի հուշարձանների պահպանության շրջանային հասարակական հսկիչ: Պարտականություններիս մեջ էր մտնում շրջանի տարածքում գտնվող պատմաճարտարապետական հուշարձանները հսկելը:

Մի անգամ ինձ տեղեկացրին, որ Հադիս սարի շրջանում հայտնվել են մարդիկ, որոնք անսովոր ուսումնասիրություններ են կատարում: Ճիշտն ասած, սկզբից թվաց, թե գործ եմ ունենալու մի նոր ինքնակոչ «ոսկեխույզների» խմբի հետ, որոնք, ցավոք, դեռևս պատահում են: Հատկապես կասկածելի էր այն, որ այդ

աշխատանքները կատարվում էին Աբով-յանի շրջանի Զառ և Ակունք գյուղերի միջև գտնվող մի կարևոր հուշարձանախմբի հարևանությամբ: Այստեղ հայտնվում են ենթարկված միջնադարյան երկու կիսաքանդ մատուռներ, եկեղեցի և հնադարյան գերեզմանոց: Որոշ նախապատրաստությունից հետո ես ճանապարհվում եմ «դեպքի վայրը»: Եվ ինչ եմ տեսնում. կատակելով, երեք պատանիներ լեռնալանջին սրածայր մետաղյա ձողերի օգնությամբ ինչ-որ քարերի կտորներ են շուռումուռ տալիս, հավաքվում իրար գլխի, քննարկում, վիճաբանում և նորից շարունակում իրենց տարօրինակ զբաղմունքը: Նրանք այնպես են կլանված իրենց այդ գործով, որ չեն նկատում ինձ: Սկզբից ներկայանում եմ որպես մի պատահական անցորդ: Ի զարմանս ինձ՝ նրանք ամենևին անակընկալի չեն գալիս և սիրով պատասխանում են իմ «հենց այնպես» տրված հարցերին: Պարզվում է, որ տղաները Երևանից են, սովորում են Կրուպսկայայի անվան դպրոցում: Ասում են, որ ամառային արձակուրդները ավելի հետաքրքիր անցկացնելու համար որոշել են օգնել իրենց ավագ ընկերոջը, որը նույն դպրոցի շրջանավարտներից է և այժմ աշխատում է հնագիտության ինստիտուտում: Շուտով մեզ է մոտենում նրանց ղեկավարը՝ ՀՍՍՀ ԳԱ հնագիտության ինստիտուտի աշխատակից Հրաչյա Ղազարյանը (Սևակ) և կասկածներս լիովին փարատվում են: Ես գործ ունեմ իսկական հնագետների հետ: Մնում է մի կարևոր հարց ևս. Հադիս սարը իր օգտակար հանածոներով վաղուց է գրավել երկրաբանների ուշադրությունը, սակայն ի՞նչն է այստեղ բերել հնագետներին:

Խմբի ղեկավարը ժպտում է.

— Մինչ ես կտեսակավորեմ այսօրվա հավաքված նյութերը, Ձեզ հետաքրքրող հարցերով կարող եք դիմել տղաներին:

Տղաներից ամենաակտիվը՝ Հայկը ընկրկում է.

— Առեղծվածային Հադիս սարը կամաց-կամաց բացում է իր գաղտնիքները: Այստեղ հայտնաբերվել են բազմական էակի կողմից պատրաստված քարե գործիքներ, որոնք օգտագործվել են մոտ 100 հազար տարի առաջ: Այդ հայտնագործությունը կատարել է ընկ. Հրաչյան, իսկ ես, Միհրանը և Հակոբը պարզապես օգնում ենք նրան,— համեստորեն իր խոսքը եզրափակում է նա:

Նկատելով, որ իմ հետաքրքրությունը գնալով աճում է և ես ամենևին էլ «պատահական անցորդ» չեմ, խոսակցությանը միանում են նաև Հակոբն ու Միհրանը: Նրանք ինձ ցույց են տալիս իրենց հավաքած հնադարյան գործիքները, բացատրում, թե ինչպես կարելի է իմանալ նրանց արհեստական լինելը, պատրաստման եղանակը՝ օգտագործման ոլորտը: Իմ զարմանքը աստիճանաբար փոխվում է հիացմունքի, տղաները քաջատեղյակ են իրենց աշխատանքին վերաբերող նույնիսկ ամենաաննշան մանրուքին, անչափ ոգևորված են և գործին ամբողջ էությամբ նվիրված: Ես մտովի իմ շնորհակալական խոսքն եմ ուղղում այս դպրոցին, իհարկե, այստեղ «մեղքի» իր բաժինն ունի նաև նրանց ղեկավարը՝ Հրաչյա Ղազարյանը, որը կրկին մեզ է մոտենում և տղաների խոսքը շարունակում.

— Նմանատիպ վայրեր հայտնաբերվել են նաև աշխարհի մի քանի այլ վայրերում, իսկ մեր հանրապետությունում գտնըվող Արտենի լեռը վաղուց համընդհանուր ճանաչում է ձեռք բերել: Սակայն ուրիշ է Հադիսը, արդեն իսկ հայտնաբերված նյութերը (իսկ հավաքվել է ավելի քան 700 նմուշ) թույլ են տալիս առանց վարանելու առանձնահատուկ վերաբերմունք ցույց տալ Հադիս սարի նըկատմամբ: Այստեղ կարծես գործել է քարե գործիքների պատրաստման մի հսկա «արհեստանոց»: Ուսումնասիրություններ, որ դեռևս շարունակվում են, և գիտական աշխարհին դեռևս շատ անակնկալներ կըմատուցեն առեղծվածային Հադիս սարը և իմ տղաները,— ժպտալով ավելացնում է նա:

Այո, ենթադրվում է, որ կատարվել է հնագիտական հետաքրքիր հայտնագործություն և դրանում իրենց ավանդն ունեն ձեր հասակակիցները՝ Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցի 9-րդ դասարանի աշակերտները՝ Հայկը, Հակոբը և Միհրանը:

Եվ ես համոզված եմ, որ նրանց համար ամառային արձակուրդի այդ օրերին ճշտվեց, ավելի որոշակի դարձավ մի կարևոր հարց. նրանք դառնալու են հընագետ: Իսկ մասնագիտական կողմնորոշման համար վճռական նշանակություն ունեն սերը, նվիրվածությունը ընտրած աշխատանքի հանդեպ:

**ԱՐԱՄԱՅԻՍ ՍԵԴՐԱԿՅԱՆ**

Ի. Ա. ԿՐԻԼՈՎ

# Տերևներն ու արմատները

Մի ամռան օր արևաշող
Փռած իրենց ստվերը նոխ,
Տերևները կանաչավետ
Խոսում էին զեփյուռի հետ.
«Արդյոք, մենք չե՞նք դաշտի զարդը՝ կանաչ ու ջինջ,
Մեզանով չէ՞ ծառը այսպես
Ելել, փռվել փարթամ ու վես:
Մենք չե՞նք տոթին մեր ստվերում
Ճամփորդ մարդուն հանգիստ բերում:
Մեր հմայքին գերի դառած՝
Գառնարածը քնելու չի՞ գալիս այստեղ:
Այգաբացին մեզ մոտ թառած՝
Սոխակն երգում անուշագեղ:
Մեղմիկ զեփյուռ, դու էլ չէ՞ որ
Մեզ հետ ես միշտ՝ գիշեր ու զօր»:
«Մեր մասին էլ պետք է ասվի, ախր մի բան»,—
Գետնի տակից պատասխանեց նրանց մի ձայն:
«Ո՞վ սիրտ արեց խոսել այդպես ամբարտավան,
Է՜յ, ո՞վ է այն,
Ո՞ր հանդուգն է քիթը խոթում մեր գործի մեջ»,—
Հոխորտացին տերևները ծառի ծերին:
«Մենք ենք, հրես,—
Ասաց ձայնը տերևներին,—
Մենք, որ մթնում խարխափելով սնում ենք ձեզ,
Մի՞թե դուք մեզ մինչև հիմա չեք ճանաչել:
Արմատն ենք մենք,
Դուք մեզնով եք այդպես աճել,
Ու լավ հիշեք.
Արմատները թե չորանան,
Ձեր բողբոջը ամեն գարուն չի զորանա,
Ու ոչ ծառը կանի, ոչ էլ դուք կլինեք»:

Թարգմ. Հ. ԴԱՎԹՅԱՆԻ



Ն. ՆԵՊՈՄՆՅԱՇՉԻ

# Մռռանի ծագումնաբանությունը

Գիտե՞ք արդյոք, որ եվրոպացի կատվասերների միջազգային ֆեդերացիան (ՖԻՖԵ-ն) կազմել է ընտանի կատուների ցեղայնության սեփական դասակարգում, որի մեջ 57 տարատեսակ է մտնում: Գիտե՞ք, թե ինչով ավարտվեց գիտնականների վեճը ընտանի կատուների ծագման մասին: Ո՞վ է նրանց նախահայրը: Գուցե մի քանի նախահայրեր են ունեցել... Ո՞վ է կատվի առաջին ընտելացնողն եղել և ինչպե՞ս է հետո կատուն տարածվել մոլորակով մեկ: Ինչո՞վ են իրարից տարբերվում նրա հիմնական ցեղատեսակները:

Այս հարցերից մի քանիսին աշխատենք պատասխանել:

Մեր ընտանի՝ կատվի նախահորը պետք է փնտրել ոչ թե Եվրոպայի անտառներում, այլ աֆրիկյան մայրցամաքի հյուսիսի շոգ կիսաանապատներում: Ամենահավանականն այն է, որ նա նուբիական վայրի կատուն լինի: Հիմա էլ, մարդու ձեռքն ընկնելիս, նա հեշտությամբ ընտելանում է և ընդհանրապես դեպի բնակավայրերն է ձգտում, որով ի դեպ, եվրոպական վայրի ցեղակիցների լիակատար հակապատկերն է: Նուբիական կատուն լայնորեն տարածված է Աֆրիկայում և այլուր, ուր ենթատեսակների է բաժանվում: Հենց Նուբիական անապատում ու Եգիպտոսում ապրող ենթատեսակներն, ինչպես նաև Եթովպիայի բարձրադիր սարահարթերում բնակվող հաբեշական ենթատեսակը, դատելով մարմնի կառուցվածքից, համարվում են այժմ մեր ընտանի կատվի նախահայրերը:

Առաջին անգամ այս վարկածն առաջ քաշեց ֆրանկֆուրտցի հետազոտող Էդուարդ Ռյուպպելը: Նա անցյալ դարի կեսերին գտել էր նուբիական կատու Նեղոսի ափին և տրվել նրա գիտական նկարագրությունը: Ավելի ուշ գիտնականները պարզել են, որ նուբիական կատվի ենթատեսակները, ոչ միայն Եգիպտոսում էին բնակվում, այլ Նուբիայում, Միջագետքում, Արաբիայում և այլուր, և այդ վայրերում էլ կարող էր տեղի ունենալ ընտանիացումը:

Այսքանը:

Բայց սա կարճամազ կատուների նախնիների մասին: Իսկ երկարամազների՞: Սրանց ծագումն այդպես էլ մինչև վերջ չի պարզված: Հնարավոր է, որ նա անապատի կատվի վայրի և եվրոպական կատվի կովկասյան ենթատեսակի խառնուրդը լինի: Հնարավոր նախահայրերի թվում անվանում են նաև մանուլին: Իսկ վերջին տարիներին ծնվեց մի նոր վարկած, համաձայն որի երկարամազ կատուները ծագում են Հյուսիսային Աֆրիկայի անապատային երկրամասում բնակվող առաջավոր ասիացի ազգակցուհուց՝ բարխանային, ավազուտային կատվից: Այս վարկածի օգտին է խոսում թեկուզ այնպիսի մի հատկանիշ, ինչպիսին է պարսկական երկարամազ կատուների թաթերի ներսի մասում պահպանված թավ մազը, որը տաք ավազի վրայով քայլելիս բարխանային վայրի կատվին փրկում է այրուցքներից:



Կարմիր եթովպական կատու
(հյուսիսաֆրիկյան տարատեսակ)

Մեկ ուրիշ փաստարկ ևս այդ ազգակցության օգտին՝ բարխանային կատվի տարածման շրջանը Իրանի հյուսիս-արևելքն է, այսինքն այն շրջանն է, որ Խորասան էին անվանում: Հենց այստեղ է 17-րդ դարի սկզբում իտալացի ճանապարհորդ Պյետրո դելլա Վալլեն տեղի բնակիչների մոտ զարմա-

նալի գեղեցկության ընտելացված կատուներ տեսել: Սրանք աչքի էին ընկնում գորշ-երկնագույն մետաքսանման մորթով ու փափկամազ, փարթամ պոչով: Սակայն արդյո՞ք սրանք առաջին պարսկական կատուներն էին (որ նաև անգորական են կոչվում), առայժմ ստույգ հայտնի չէ:

Միաժամանակ ընդհատենք մոռանի նախահայրերի որոնումն ու հայացք նետենք պարսկական ընտանի կատվի վրա: Սրան հատկապես ներկայացնելու կարիք չկա. ողջ աշխարհում այս փափկասուն կենդանուն արքայադուստր են անվանում: Ասում են, իբր սա քմահաճ է, չմահավան ու կասկածամիտ: Մի բան ճիշտ է, այս կատուն իսկապես քմահաճ է. նա չափազանց շատ ժամանակ է ծախսում իր հարդարանքի վրա...

19-րդ դարի վերջում Եվրոպան առաջին անգամ ծանոթացավ երկնագույն «պարսկուհիների» հետ: Նրանք հմայեցին բարձրաշխարհիկ շփացած տիկիններին իրենց փոքրիկ ականջներով, կարճլիկ թաթիկներով և պեկինեսների շնիկներ հիշեցնող արտաքինով: Անվերջանալի խաչասերումներից հետո պարսկական կատուների բազմաթիվ գունավոր տարբերակներ հայտնվեցին: Ամենաարժեքավորները՝ միաերանգներն են, օրինակ՝ երկնագույնի տարատեսակները՝ նարնջագույն կամ պղնձագույն աչքերով:

Առյուծներից զատ կատվի ցեղի բոլոր ներկայացուցիչները մենակյացներ են: Թերևս պատճառներից մեկը հենց այն է եղել, որ կատուն վարժվել է մարդուն ու մնացել նրա տանը: Բայց նա վերջիններից է եղել: Նրան նախորդել են շունը, ոչխարը և աստիճանաբար ընտանի դարձած այլ կենդանիներ:

Մեմֆիսում՝ Սակարայի դամբարաններից մեկում (2500 տարի մեր թվարկությունից առաջ), որմնանկարները կատվին պատկերում են նուբիականին շատ նման: Նրա վզկապը վկայում է, որ կենդանին արդեն մարդու իշխանության տակ է գտնվում: Սակայն հիշենք. այն հեռավոր ժամանակներում տիրակալների պալատներում շղթայակապ ապրում էին և՛ վագրեր, և՛ առյուծներ, և՛ վագրակատուներ (հեպարդներ): Հետևաբար՝ վզկապը դեռ ապացույց չէ, թե վայրի կատուն այն ժամանակ ընտելացված էր:

Ուսումնասիրողների մեծ մասն այսօր հակված է կարծելու, որ հենց Հին Եգիպտոսն է ընտանի կատվի օրրանը: Սակայն վերջին տարիներին Առաջավոր Ասիայում կատարված պեղումները մի այլ ենթադրություն էլ առաջ քաշեցին: Պարզվեց, որ Հարավային Իրաքում կատուն տարածված էր մեր թվարկությունից առաջ 3-րդ հազարամյակում, իսկ արևմտյան Անատոլիայում (այսօրվա Թուրքիայի տարածքում) ժայռապատկերների վրա կատուն երևում է հովիվների ու որսորդների կողքին, մեր թվականությունից առաջ 7800 թվին:

Ուրեմն, այնուամենայնիվ, ընտելացման մի քանի օջախ է գոյություն ունեցել: Վերջին տարիներին ուսումնասիրելով հնադարյան մարդու բնակավայրերում մնացած խարույկատեղերը, Կենտրոնական Եվրոպայի զանազան շրջաններում գիտնականները մանր կատվացեղայինների բազմաթիվ ոսկորների են հանդիպել: Կատուներ պատկերող կավե արձանիկներն այստեղ վերաբերում են 4-րդ հազարամյակին մեր թվականությունից առաջ:

Այսպես թե այնպես, Հին Եգիպտոսն առայժմ գիտության կողմից ճանաչված ընտանի կատվի միակ օրրան է: Այստեղ որմնանկարչության մեջ առյուծի ու կատվի պատկերման համար գոյություն ուներ մի ընդհանուր հիերոգլիֆ՝ «Միու»: Ժամանակի ընթացքում այն դարձավ «մաու», և հավանաբար հենց դրանից էլ ծագել է մեզ համար այնքան սովոր «մյաուն»:

Այն հեռավոր ժամանակներում մարդկանց ու կենդանիների փոխհարաբերությունները շղարշված էին խորհրդավորությամբ ու անեղծվածայնությամբ: Հին եգիպտացիները գտնում էին, որ կենդանիների մեջ մարմնավորվում են աստվածները և մարդիկ մահից



Պարսկական սպիտակ կատու

հետո այս կամ այն գազանի կերպարանքն են ստանում: Եգիպտական առաջին տիրակալներին, որոնք իրենց աստվածներին հավասար էին համարում, հաճախ գազանների կերպարանքով էին պատկերում: Հույն պատմիչ Հերոդոտը 5-րդ դարում, մեր թվականությունից առաջ, գրում է, որ Եգիպտոսում աստվածներն ավելի շատ են, քան մարդիկ: Եղել է նաև կատվի գլխով աստվածուհի՝ Բաստը: Հասկանալի է, որ այս օգտակար կենդանին արագորեն հանրաճանաչություն է ձեռք բերում հողագործների շրջանում, քանի որ նրանց կենսամթերքների պաշարները պահպանում էր մկներից ու առնետներից:


Բիրմայան կատու

Կատվի պաշտամունքը հարյուրամյակներ է տևել: Հրդեհի ժամանակ եգիպտացիները կրակից դուրս էին բերում հենց կատվին, իսկ նրա մահվան դեպքում սափրում էին գլուխները ի նշան սգի: Պատմիչ Դիոդոր Սիցիլիացին 1-ին դարում, մեր թվարկությունից առաջ, գրում է, որ կատու սպանողը ինքն էլ կսպանվի...

Պարսից թագավոր Կամբիզը իր ժամանակին հաջողությամբ օգտվել է կատուների՝ նկատմամբ եգիպտացիների չափազանց մեծ սիրուց. քաղաքներից մեկի պաշարման ժամանակ իր զորավարներին հրամայել է վահաններին ամրացնել մարդու հենց այս չորքոտանի ուղեկիցներին: Քաղաքը հանձնվել է առանց մարտի. պաշտպանները վախեցել են վիրավորել սուրբ կենդանիներին: Դիոդորը հաղորդել է նաև, որ մի անգամ սաստիկ սովի ժամանակ, երբ մարդիկ ուժասպառ վայր էին ընկնում փողոցներում, ոչ ոք ձեռք չտվեց կատուներին:

Մեր թվականության սահմանագլխին այս պաշտամունքն աստիճանաբար մարել է, սակայն իսլամը, որ մի քանի հարյուրամյակ անց Հյուսիսային Աֆրիկա է ներխուժել, նորից մեծարել է կատվին: Իսլամի հետ կատվի պաշտամունքը լայնորեն տարածվել է Ասիայում ու Աֆրիկայում: Մի թուրք սուլթան իր կտակում խնդրել է անտուն կատուների համար ապաստարան կառուցել քաղաքում, արևոտ բացատներով, տաքուկ վայրերով ու մկներով, որոնց շարունակաբար բաց էին թողնելու պարտեզում հատուկ դրա համար վարձված ծառաները: Մահմեդականների մոտ մինչև օրս էլ այն հավատալիքը կա, թե երեք գույնանի կատուները փրկում են տունը հրդեհից:

Սակայն իսլամի բոլոր երկրպագուները չեն, որ սիրում են կատուներին: Բեդվիններն, օրինակ, որոնք քոչվորական կյանք են վարում և որոնց ամենևին էլ պետք չեն կատուները, առաջվա պես կատվին չար ոգի են համարում ու անխնա ոչնչացնում:

Դարեր են անցել, մինչև կատուն հայտնվել է եվրոպացիների տներում: Հին Եգիպտոսում խստիվ արգելված էր սուրբ կենդանիներին դուրս բերել երկրից, և դաժանորեն պատժում էին մաքսանենգներին: Չնայած արգելքներին, կատվին այնտեղից Կրետե կղզին հասցրին: Թրծակավե արձանիկներից դատելով, դա տեղի է ունեցել 2-րդ դարում մեր թվականությունից առաջ: Իսկ 600 տարի հետո նրանք «թռիչք գործեցին» Միջերկրական ծովի վրայով ու հայտնվեցին Հելլադայում ու Ապենինյան թերակղզու վրա: Ցեղական կատուների հոյակապ պատկերներ են պահպանվել ապուլյան սկահակների վրա: Ուրեմն, արդեն այն ժամանակ նրանք անցել էին ընտրասերման երկար ճանապարհն ու դարձել ոչ այնքան նման իրենց վայրի նախահորը: Եվրոպայում կատվի համար խաղաղ կյանքն ավարտվեց 1484 թվին, երբ Իննոկենտի 8-րդ պապը կոնդակ հրապարակեց, որով, որպես «կախարդական ծնունդ», անիծեց այդ կենդանուն: Կատուներին սկսեցին հետապնդել իրենց տերերի հետ միասին: Սպանված կենդանիների թիվը հարյուր հազարների էր հասնում:

Բազմաթիվ ողջախոհ մարդիկ Եվրոպայում աշխատում էին խանգարել անմեղ կենդանիների անմիտ ու անխնա ոչնչացմանը, լուսավորական աշխատանք էին տանում, մարդ-

կանց բացատրում, թե ինչ օգուտ են բերում կատուները, ոչնչացնելով կրծողներին: Միլիոնավոր կատուների ոչնչացման համար եվրոպացիները պատժվեցին սոսկալի հիվանդությունների բռնկումներով, որոնց դրդապատճառը բազմացած առնետներն էին:

Այսօր կատուն շնից հետո ամենասիրված ընտանի կենդանին է: Որոշ երկրներում կատուների երկրպագուները իրենց քանակով շատով կանցնեն շնաբույծներից:

Կատուների առաջին ցուցահանդեսը տեղի է ունեցել Լոնդոնում, 1871 թվին, այնտեղ ներկայացվել է 170 կատու, այդ թվում նաև սիամականները, որոնք բերվել էին Հարավ-



Պարսկական շիկակարմիր կատու

Արևելյան Ասիայից: Հետնյալ ցուցահանդեսում, որ տեղի ունեցավ 18 տարի անց՝ նույնպես Բրիտանական կղզիներում, ցեղատեսակները շատ ավելի էին: Ցուցադրված կենդանիներից մեկի վրա նույնիսկ ցուցանակ էր կախված. «Վախեցիր այն մարդուց, որը կատու չունի»:

Հարյուրամյակների և նույնիսկ հազարամյակների ընթացքում փոխվում ու կատարելագործվում էին ցեղատեսակները: Ճիշտ է, ի տարբերություն շների, կատուները քիչ են հեռացել իրենց նախահորից՝ նուբիական վայրի կատվից: Բայցևայնպես տարբերությունները ակնառու են «սիամցիների», «հաբեշստանցիների», «բիրմացիների», «հավանացիների» (որն այսպես է կոչված ոչ թե իր կուբայական ծագման համար, այլ գույնի, որ նման է հավանայական սիգարի գույնին), ռուսական երկնագույնի և եվրոպական կարճամազի (մեր մոռանի)՝ միջև:

Բոլոր ցեղատեսակները պայմանականորեն բաժանվում են երկարամազերի ու կարճամազերի: Յուրաքանչյուր խմբի ներսում բաժանումը կատարվում է ըստ մազի նկարատեսակի, աչքի գույնի, բրդի ձևերի:

1949 թվին ստեղծվեց կատուների եվրոպացի սիրողների միջազգային ֆեդերացիա, որը ցուցահանդեսներ է կազմակերպում, ընտրասերման լայն աշխատանք տանում: Սոցիալիստական երկրներից նրա անդամն է հանդիսանում ՉՍՍՀ-ը:

Վերջերս էքսպերտ-կենդանաբանները այս ֆեդերացիայի խնդրանքով անալիզի ենթարկեցին Շվեյցարիայում վայրի կյանք վարող շատ կատուների ստամոքսների պարունակությունը: Հանն այն է, որ ֆեդերացիան բազմաթիվ բողոքներ է ստանում թռչնասերներից, իբր կատուները որսում են իրենց սանիկներին: Եվ ի՞նչ ցույց տվին ուսումնասիրությունները: Պարզվեց, որ կատուների օրակերի 90 տոկոսը զանազան մկնատեսակ կրծողները, տնային ավելցուկները, միջատները ու բույսերն են կազմում: Եվ վաթսուն դեպքից միայն երեքում թռչունների մնացորդներ հանդիպեցին: Եվս մի հետաքրքիր փաստ: Ըստ չեխ կենդանաբան Յ. Սլադեկի տվյալների, Կարպատներում եվրոպական վայրի կատուների ավարն են կազմում նույն այդ կենդանիները և ոչ թե որսամիսը, ինչպես կարծում են որոշ պրոֆեսիոնալ որսորդներ: Ցավոք այս ուսումնասիրությունների արդյունքները այնքան լայնորեն հայտնի չեն, որպեսզի ընտանի և եվրոպական վայրի կատվին ազատեն թռչուններ ոչնչացնողի տխուր հռչակից:

# Հրաշք ծառը



Ավելի քան 2000 երկար ու ձիգ տարի կանգնած է նա բնության արհավիրքների դեմ և բազում սերունդների համար դարձել է պաշտամունքի առարկա:

Հսկան արևելյան սոսի է (տնջրին): Հայաստանի բազմատեսակ ծառերի այս նահապետը գտնվում է Լեռնային Ղարաբաղի Սխտորաշեն գյուղի մոտ:

Ծառի բնից մոտ 5—6 մետր հեռավորության վրա խոխոջում է մի ջինջ աղբյուր, որը երեք ակ ունի, դրանցով էլ սնվում է ծառը, որի մասին ավանդաբար ասվում է. «Ով երեք անգամ նստի այդ սոսիի հզոր արմատների մոտ և խմի աղբյուրի ջրից, շատ երկար կապրի»:

Քառանյուղ այդ ծառի բարձրությունը 30, հաստությունը (տրամագիծը)՝ 9,5, փչակի տրամագիծը՝ 7,2 մետր է: Գյուղի տեղական կազմակերպությունները պատնեշել են ծառը, շրջակայքը բարեկարգել ու դարձրել մի գողտրիկ հանգստի վայր:

Ըստ ավանդությունների այս ծառի տակ նստել ու հանգիստ են առել հայոց հին ու նոր աշխարհի մեծեր Մեսրոպ Մաշտոցը, Մովսես Խորենացին, Սայաթ-Նովան, Րաֆֆին և շատ շատերը:

ԵՂԻՇԵ ԹՈՎՄԱՍՅԱՆ

# ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ ՁԵՐ ՀԱՐՑԵՐԻՆ

**Հարգելի խմբագրություն, խնդրում եմ պատասխանեք ինձ հետաքրքրող հարցերին.**

**1. Մենք բոլորս էլ գիտենք, որ Երկիր մոլորակը պտտվում է իր առանցքի և Արևի շուրջը: Ինչու՞ Երկրի վրա ապրող մարդիկ այդ բանը նկատում են, բայց չեն զգում:**

**2. Տիեզերքում կա՞ այնպիսի աստղ, որ Արևից մեծ է:**

ԿԱՐԻՆԵ ՂԱԶԱՐՅԱՆ
Բոգդանովկայի շրջան,
գ. Գանձա, 8-րդ դասարան

1. Այո, իրոք երկրագունդը պտտվում է և իր առանցքի, և Արեգակի շուրջը: Այդ շարժմանը մասնակցում ենք և մենք, բայց այդ բանը չենք զգում, քանի որ Երկրի առանցքի շուրջը պտտվելիս մենք ունենք նույն արագությունը, ինչ որ Երկրագնդի արագությունն է: Փաստորեն դա նման է այն դեպքին, երբ մենք գտնվելով նավի մեջ և շարժվելով նրա հետ նույն արագությամբ, չենք կարող շարժումը զգալ, եթե չլինի մի այլ մարմին, որի նկատմամբ կարողանանք համեմատել մեր շարժումը:

Արեգակի շուրջը երկրագունդը պտտվում է մոտ 30 կմ/վ արագությամբ, բայց դա նույնպես չենք զգում, քանի որ գտնվում ենք երկրագնդի վրա և նրա հետ շարժվում ենք նույն արագությամբ:

2. Տիեզերքում անթիվ-անհամար են այն աստղերը, որոնք իրենց չափերով և զանգվածով շատ անգամ գերազանցում են Արեգակին:

Հայտնի ամենամեծ աստղի՝ Կառավարի ինֆրակարմիր արբանյակի շառավիղը գրեթե 3000 անգամ մեծ է Արեգակի շառավղից:

Կան աստղեր, որոնք ծավալով միլիարդավոր անգամ գերազանցում են Արեգակին: Բայց կան թզուկ աստղեր, որոնք անգամ Երկրից փոքր են: Շատ մեծ չափեր ունեն հատկապես կարմիր գերհսկա աստղերը: Օրինակ, Բետելգեյզեն և Անտարեսը տրամագծով հարյուրավոր անգամ մեծ են Արեգակից: Եթե Անտարեսի (Կարինի) կենտրոնը համատեղվի Արեգակի կենտրոնի հետ, ապա Երկրի ուղեծիրը կտեղավորվի աստղի ներսում:



Մեզանից ավելի հեռու գտնվող Ցեֆեոսի VV աստղն այնպիսի չափեր ունի, որ նրա ներսում կտեղավորվի արեգակնային համակարգությունը՝ մոլորակների ուղեծրերով: Այնինչ գերհսկաների զանգվածները Արեգակի զանգվածից մեծ են ընդամենը 30—40 անգամ:

Չնայած աստղերի չափերը խիստ տարբեր են, սակայն յուրաքանչյուր աստղի նյութի պարունակությունը մոտավորապես նույնն է:

Այդ է պատճառը, որ հսկա աստղերը շատ նոսր են, իսկ թզուկ աստղերը, ընդհակառակը, ունեն վիթխարի խտություն:

Այսպիսով, խոսելով աստղերի մեծությունների մասին, պետք է նկատի ունենալ կամ նրանց չափերը, կամ զանգվածները:

Գիտության ժամանակակից մեթոդներով հաստատված է, որ աստղերի այժմ հայտնի ամենամեծ զանգվածները գերազանցում են Արեգակի զանգվածին հարյուրավոր անգամ, իսկ ամենափոքր արժեքները կազմում են Արեգակի զանգվածի մեկ քսաներորդ մասը:

Օրինակ, Օրիոն (Հայկ) համաստեղության Բետելհեյզե աստղի տրամագիծը Արեգակի տրամագծից մեծ է 350 անգամ: Կառավար համաստեղության Էպսիլոն գերհսկա աստղի չափերն այնպիսին են, որ եթե այն դատարկ լիներ, ապա նրա մեջ կտեղավորվեր 20 միլիարդ Արեգակ:

**Պ. ԾԱՏՈՒՐՅԱՆ**

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

● Ֆրանսիայի հարավի, Արդել դեպարտամենտի քարանձավներից մեկում ստեղծվել է ստորերկրյա կենդանաբանական այգի:

Քարանձավի երկարությունը երկու կիլոմետր է, իսկ խորությունը՝ մինչև երկու հարյուր մետր: Նրանում հավաքել են երկրի տարբեր քարանձավային կենդանիների: Այստեղ կան չղջիկներ, կարիճներ, հազարոտնիկներ, սարդեր, սալամանդրեր, սպիտակ ծղրիդներ և թիթեռներ, կիսաթափանցիկ ձկներ, որ բնակվում են ստորերկրյա գետերում և լճերում:




● Այս ամառ վենեսուելական Էլ-Սալտո գյուղի վրա հարձակում գործեցին «մարդասպան-մեղուները», որոնք Հարավային Ամերիկա էին բերվել Աֆրիկայից: Գյուղի երկու հարյուր հիսուն բնակիչների, որոնք ստացել էին վտանգավոր խայթոցներ, միայն գիշերը հաջողվեց փախչել տասնյակ կիլոմետրեր հեռու գտնվող մոտակա հիվանդանոցը, որտեղ նրանց անմիջապես տեղավորեցին:

Իսկ գյուղում գտնվող գրեթե բոլոր հավերը սատկեցին աֆրիկական ագրեսիվ մեղուների թույնից:




ՋԱՎԵՆ ՀԱԿՈԲՅԱՆ

# Հանելուկներ

Իրար կպած զույգ ձեռնափ
Գանձ են պահում լոբու չափ:
(մարգարտախեցի)

Բույն է հյուսում պինդ թելից,
Բայց խլում ենք իր ձեռքից:
(շերամ)

Ամռանը քուրք է հագնում,
Իսկ ձմռանը՝ մերկանում:
(ծառ)

Մի սար՝ կողքին զույգ աղբյուր,
Աղբյուրներում՝ աղի ջուր:
(աչքեր)

Կար ժամանակ՝ փետուր էր,
Հետո դարձավ նա պողպատ,
Իսկ հիմա էլ ձողիկ է,
Ծայրին՝ սահուն մի գնդակ:
(գրիչ)

Աշխատանքում՝ համառ,
Առակներում՝ հիմար:
(էշ)

Ամուր քար էր՝
Դարձավ ալյուր,
Երբ ջուր խմեց,
Դարձավ քարից ամուր:
(ցեմենտ)

Ճերմակ-ճերմակ է,
Կյանքի աղբյուր է,
Փոքրերի համար և՛ կեր, և՛ ջուր է:
(կաթ)

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15, Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.



ՌՈՒԲԵՆ ՇԱՀՎԵՐԴՅԱՆ (1900—1976 թթ.)
ԴԵԿՈՐԱՏԻՎ ԱՐՁԱՆԻԿՆԵՐ

Հանձնված է շարվածքի 24.05. 1985 թ.։ Ստորագրված է տպագրության 29. 07. 1985 թ.։
ՎՖ 08947։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ. 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 67932։ Պատ. 1355։ Գինը՝ 15 կ.
Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2։

Сдано в набор 24.05.85 г. Подписано к печати 29.07.85 г. Формат 70×100 1/16
ВФ 08947. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 67932. Заказ 1355. Цена 15 коп.
Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.



Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.:

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ.:

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.

ԻՆԴԵՔՍ՝ 77806